1916. № 51.—Դեկտեմբերի 18

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռ. 50 կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռ., կէս տարուան 2 ռ.։ Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արասաբաղեան հրապար. № 7.

**Հեռախօս № 29.**

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ 1917 Թ.

## ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ԳՐԱԿԱՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԾՐԱԳԻՐ. 1. Պաշտօնական տեղեկութիւններ, կառավարչական կարգադրութիւններ, Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան կենտրոնական Խորհրդի ու ճիւղերի հաշիւները, որոշումները, արձանագրութիւնները և շրջաբերականները. 2. Հեռագիրներ, ներքին և արտաքին տեսութիւններ, հասարակական, կուլտուրական և գիտական բովանդակութեամբ յօդուածներ, գրական նորութիւններ և պատմական տեսութիւններ, վիպակներ, պատմուածքներ, ոտանաւորներ և քննադատութիւն 3. Քրոնիկոն, տեղեկութիւններ, կենսագրութիւն և մատենախօսութիւն. 4. Արուեստ, թատրոն, երաժշտութիւն և նկարներ. 5. Փոստարկղ և յայտարարութիւն։

Թերթը բաղկացած կլինի 8 մեծադիր երեսներից և լոյս կտեսնէ կիրակի օրերը։

Բաժանորդագինն է տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ռ. 50 կ., հայ դպրոցների, ուսուցիչների, հայ հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ռուբլի, կէս տարուան 2 ռուբլի։ Արտասահման 5 ռուբլի, կէս տարուան 3 ռ.։

Բաժանորդագրութիւն ընդունւում է խմբագրատանը, Թիֆլիս, Արասաբաղեան հրապարակ, № 7 և Ընկերութեան գաւառական ճիւղերի վարչութիւններում։

Խմբագիր՝ Ս. Յարութիւնեանց

Հրատարակիչ՝ Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկերութիւն

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՀԱՇՏՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԱՐԿ

*Պատերազմական սուր գործողութիւնների միջոցին Գերմանիայի առաջարկութիւնը հակառակորդներին՝* վերջ տալ արիւնհեղութեան եւ հաշտութեան դաշն կապել՝ *ցնցում առաջ բերեց քաղաքական աշխարհում. այդ անսպասելի առաջարկութիւնը պայթումի ներգործութիւն ունեցաւ դիւանագիտական, զինուորական և հասարակական շրջաններում։*

*Ռուսաստանը, Անգլիան և Ֆրանսիան անմիջապէս արտայայտուեցին այդ առթիւ. դաշնակիցները կտրուկ կերպով ցոյց տուին իրենց բացասական վերաբերմունքը, բացարձակապէս յայտարարելով՝ որ չեն հաւատում Գերմանիայի անկեղծութեան և նրա յանդուգն ոճով առաջարկութեան։*

*Դաշնակից պետութիւնների կարծիքով Գերմանիան իր կեղծ առաջարկութեամբ կամենում է բարոյական արդարացում գտնել և քօղարկել իր կատարած անթիւ ոճրագործութիւնները։*

*Բովանդակ աշխարհը վաղուց փափագում է անխախտ, իրապէս ապահովուած խաղաղութեան, որի համար ահա՝ երրորդ տարին է ինչ ամբողջ Եւրոպան և Ասիայի մի մասը—դժբաղդ Հայաստանը ներկւում են ծով արիւնով և միլիոնաւոր զոհեր տալով։*

*Իսկ հաստատուն խաղաղութիւնը, երբ մարդկութիւնը կարող կը լինի դուրս գալ երկարատև խեղդող մթնոլորտից, երբ կը վերսկսուի կուլտուրական և քաղաքակրթական բնական կեանքը—հնարաւոր է միայն այն ժամանակ, երբ վերանայ տեւտոնների զինուած սպառնալիքը, երբ Գերմանիայի միլիտարիզմը (զինապետութիւն) կը ջախջախուի և կը խորտակուի իսպառ։*

*Այս գայրոյթը և առարկութիւնները ունին շատ արդարացի հիմունքներ, իսկ առաջարկութիւնն էլ ըստ իր էութեան վերաբերում է մէկ այնպիսի մեծ և պատասխանատու խնդրի, որ անհնարին և աններելի է հարևանցօրէն թեթև անցնել, միայն գայրոյթ և բողոք արտայայտելով. հարկաւոր է լուրջ վերաբերմունք։*

*Եւ ահա՝ տեսնում ենք, որ երբ հանդէս է գալիս հաշտութեան առաջարկութեան համար միջնորդի դերում Ամերիկայի Միացեալ Նահանգների նախագահ Վիլսոնը, իսկոյն փոխւում է և վերաբերմունքը, և խօսակցութեան եղանակը թէ քաղաքական շրջաններում, թէ հասարակութեան և թէ մամուլի, թէև ոմանք դեռ շարունակում են յամառ կերպով պնդել, որ պէտք է մերժել առաջարկը առանց քննութեան։*

*Վիլսոնի քաղաքական բարձր դիրքը և անձնաւորութիւնը, իբրև յայտնի և հմուտ իրաւագէտի իբրև նուրբ և հեռատես քաղաքագէտի, ներշնչում են այն հաւատը, որ գործը լուրջ բնոյթ ունի և խորը մտածուած է։*

*Եթէ Վիլսոնը հաստատ հիմք չունենար հաշտութիւնը հնարաւոր դարձնելու, եթէ նա լաւ տեղեակ չը լինէր Գերմանիայի կողմից առաջարկելիք պայմաններին պատերազմին վերջ տալու և ամուր խաղաղութիւն վերականգնելու համար, և, վերջապէս, եթէ նա վստահ չը լինէր, որ Գերմանիայի պայմաններից գէթ գլխաւոր կէտերը ընդունելի կը համարուեն Դաշնակից Պետութիւնների կողմից կամ առիթ կը տան բանակցութեան մտնելու, աւելի քան թէ հաւանական է, որ նա չէր ընդունի միջնորդի դերը։*

*Ներկայ ահռելի պատերազմը, որի ոչ երկարատեւութիւնը և ոչ էլ հսկայական չափերը չէին նախատեսուած, մեծ ույժեր սպառեց և սոսկալի մեծ տնտեսական քայքայում, եթէ չասենք աւերումներ, առաջ բերեց ամեն տեղ։*

*Այս ծայրայեղ նեղ դրութիւնը հրամայողաբար պահանջում է վերջ տալ պատերազմին, հակառակ դէպքում Գերմանիան խաղաղութեան առաջարկ չէր անիլ, Ռուսաստանը, Անգլիան և Ֆրանսիան էլ չեն հրաժարուիլ պատուաւոր խաղաղութիւնից, որի գլխաւոր կէտերից մէկը պէտք է լինի մանր պետութիւնների՝ Սերբիայի, Բելգիայի, Չերնոգորիայի և Ռումինայի վերականգնումը և ծանր լծի տակ տառապող փոքր ազգերի, մանաւանդ տաճկահայերի, ազատութիւնը։*

*Քանի որ խաղաղութեան առաջարկը եղել է Գերմանիայի կողմից, նա էլ պարտաւոր է առաջինը յայտարարել իր պայմանները կամ ցոյց տալ, թէ ինչ հիմունքների վրայ կարելի կը լինի հաշտութիւն հաստատել։*

*Պէտք է յուսալ, որ մօտ ապագայում կը պարզուի այդ խնդիրը, հակառակ դէպքում հաշտութեան առաջարկը Գերմանիայի կողմից պէտք է համարել մի նոր և նենգամիտ խաղ։*

*Այլապէս Դաշնակից Պետութիւնները անընդհատ կը շարունակեն պատերազմը մինչև կատարեալ յաղթութիւնը։*

Ս. Յ.

---

## Պ Ա Տ Ա Ս Խ Ա Ն

## «Մ Շ Ա Կ Ի Ն»

*«Մշակը» իր № 279-ում, ներքին լուրերի բաժնում, կրկին, ինչպէս և անցեալ տարի, թոյլ է տուել մեր թերթի՝ «Համբաւաբերի» հասցէին, բաժանորդագրութեան սկզբում, մի նոր, աններելի ոտնձգութիւն, իբր թէ թերթը այս տարի խոշոր դեֆիցիտ (նիւթական վնաս) է տուել Կ. Հ. Բ. Ընկերութեան և աւելորդ է համարում հրատարակութեան շարունակութիւնը։*

*«Համբաւաբերի» հրատարակութիւնը, ինչպէս ցոյց են տալիս հաշիւները, մինչև օրս, ուրիշ թերթերի պէս դեֆիցիտ չի տուել. այդ մասին Խորհուրդը կը ներկայացնի հաշիւ առաջիկայ ընդհանուր ժողովին։ Իսկ ինչ վերաբերում է թերթի կարևորութեան և արժէքին—թող այդ մասին խօսեն մեր անաչառ ընթերցողները և ոչ թէ դիտաւորեալ չըկամները։*

*Խմբագրութիւն*

# Համաշխարհային պատերազմ

*Ռուսաց Արևմտեան ճակատ.*—Շաբաթուայ ընթացքում այս ճակատի վրայ կարևոր անցքեր տեղի չունեցան։ Երկուստեք առաջապահ զօրքերի և հետախոյզների հրացանաձգութիւն էր տեղի ունենում։ Անտառապատ Կարպատների շրջանում ռուսների համար աջող գործողութիւններ տեղի ունեցան։

*Կովկասեան ճակատ.*— Պերսւս-Կալէի շրջանում թիւրք վաշտի յարձակումը յետ է մղուել ռուսների կողմից։ Մուշից արևմուտք, Շարաֆ-Կալէի շրջանում ռուս հետախոյզները թիւրքերին իրենց խրամատներից վանելով՝ գերիներ առան։ Վանայ լճի շրջանում ռուսները թիւրք պահակախումբը յետ մղելով գրաւեցին Ազաման գիւղը։

*Ռումանական ճակատ.*—Մոլդաւիայի սահմանում ռուման զօրքը յետ խլեց նոյեմբ. 14-ին կորցրած բարձունքներից մէկը։ Սուչիցա գետի վերնամասում և Դրագոսլավէի շրջանում հակառակորդի կատաղի գրոհները յետ են մղուել ռումանների կողմից։ Ռումինկա գետի վերնամասում ռուսները քաշուել են դէպի իրենց գլխաւոր դիրքը։ Կիլնառու գետահովտում հակառակորդի բոլոր գրոհները յետ են մղուել ռուս զօրքի կողմից։ Ֆիլիպեշտի-Լիչպոտենեակա ճակատամասում հակառակորդի մի շարք յարձակումները յետ են շպրտուել, թշնամու մեծ կորուստներով։

Դոբրուջայում առաջամասերի ընդհարումներ են տեղի ունենում։

*Եգիպտական ճակատ.*—Էլ-Արիշից 20 մղոն հեռու, բրիտանական զօրքերը դեկտ. 10-ի կռւում առան 1,330 գերի, 7 թնդանօթ, մի միլիոն փամփուշտ և ուրիշ ռազմանիւթեր։

*Ծովի վրայ.*—Օտրանտեան նեղուցում աւստրիական մի նաւարաժին յարձակուեց ֆրանս-իտալական ռազմանաւերի վրայ, կատաղի հրաձգութիւն տեղի ունեցաւ. թշնամին հեռացել է մթութիւնից օգտուելով։ Դաշնակից նաւարաժնից 2 նաւ աննըշան վնասներ ստացան։

# Պետական կեանք

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱ

Դեկտ. 5-ի նիստում շարունակւում է պարէնաւորման հարցի քննութիւնը։ Տուլեակովը ընկերավար-ռամկավարների (սոցիալ-դեմոկրատների) անունից ենթադրում է, որ պարէնաւորման պատերազմում տիրող քայքայումը կարող է վերանալ միայն պատերազմի դադարելով։ Ռուսաստանի պարէնաւորման խնդիրը քաղաքական հարց է։ Պարէնաւորման իշխանութեան կազմակերպութիւնից է կախուած հարցի բաւարար լուծումը։ Ներկայ կառավարութեան եղանակով—ռեժիմով չի կարելի լուծել պարէնաւորման հարցը, որովհետև իշխանութիւնն ու ժողովուրդը տարբեր լեզուներով են խօսում։ Վերջում Տուլեակովը կարդում է իր ֆրակցիայի՝ կուսակցամասի առաջարկած բանաձևը,—թէ պարէնաւորման հարցը կարելի է լուծել միայն ժողովրդական տնտեսութեան խիստ կանոնաւորումով, թէ անհրաժեշտ է արմատապէս փոփոխել հարկային սիստեմը, տուրքի բեռը բարձելով արդիւնաբերող փողատէր դասի վրայ. անհրաժեշտ է լայնօրէն զարգացնել ժողովրդի ինքնագործունէութիւնը, անհրաժեշտ է ժողո-
վրդի լայն զանգուածների վրայ յենուող իշխանութիւն։

*Կալինինը* գտնում է, որ գիւղից առնուած է ամէն ինչ և փոխարէնը ոչինչ չէ տրուած։ Հաստատ գներով հացը պէտք է վերցնել նախ ագնուականներից և ապա գիւղացիներից, բայց այս վերջիններից միայն աւելորդը։ Միայն պատասխանատու կառավարութիւնը կարող է կարգ ու կանոն հաստատել։

Ապա հարցը սպառուած համարուելով քուէարկութեան է տրւում։ Մի քանի ֆրակցիաներ՝ կուսակցամասեր հրաժարւում են մասնակցելու։ Քուէարկութեամբ անցնում է մի խումբ ֆրակցիաների բանաձևը 114 ձայնով ընդդէմ 17-ի, 87-ի ձեռնպահութեամբ։ Այդ բանաձևն է. «Գտնելով, որ պարէնաւորման հարցում ստեղծուած ծանր դրութիւնը հետևանք է պարէնաւորման քաղաքականութեան պնսխտեմ լինելուն, կառավարութեան վաբանուներին ու տատանումներին հացի գինը հաստատելիս, նոյնպէս և միջվարչական անթոյլատրելի պայքարի, որը յարուցել է ներքին գործերի նախարարը այդ պետական կարևոր հարցի շուրջը, որ ներկայումս չի կարելի կառավարուել առանց հաստատուն գների և առանց հասարակութեան կողմից հացի հայթայթման կանոնաւորման համար ամենակարճ ժամանակում պահեստներ կազմելու, որպէսզի ապահովուի բանակի ու պաշտպանութեան համար աշխատող ազգաբնակութեան պարէնաւորումը՝ Դուման ենթադրում է. 1) Բանակի և ազգաբնակութեան հիմքում պիտի տրուի Կայսրութեան համար, թէ ճակատում և թէ թիկունքում, միակ պարէնաւորման ծրագիր կենսամթերքների պատրաստութեան, մշակման, փոխադրութեան և բաժանման համար, որ իրականացւում է միացած կառավարութեամբ և պարտադիր է պետական բոլոր մարմինների համար. 2). Այդ միակ ծրագրի հիմքում պէտք է լինի առանձին խորհրդակցութեան կողմից արդէն ընդունուած գաղափարը—հաստատ գների սկզբունքը... Ներքին գործերի նախարարութեան մատակարարման բաժանմունքի բոլոր օրգանների գործունէութիւնը պէտք է համաձայնեցուի ու ենթարկուի պարէնաւորման ընդհանուր կազմակերպութեան. 6) Անհրաժեշտ է երկաթի, նաւթի, շաքարի, բամբակէ գործուածքների և այլ կարևորագոյն արդիւնաբերական արտադրութիւնների գները վճռապէս կանոնաւորել պետական ու հասարակական օրգանների գործակցութեամբ և կազմակերպել նրանց հայթայթումը հասարակական կազմակերպութիւններին, որոնց կառավարութիւնը ամէն աջակցութիւն պէտք է ցոյց տայ այս խնդրում ...11) Յիշեալ բոլոր միջոցների գործադրութեան համար պահանջւում է, որ իշխանութիւնն ամենասերտ գործադրութիւն ունենայ երկրի բոլոր հասարակական ուժերի հետ, որ անհնար է առանց պետութեան ներքին քաղաքականութեան վճռական փոփոխութեան, առանց միացած կառավարութեան, առանց հասարակութեան վստահութեան դէպի կառավարութիւնը և առանց օրէնսդրական հիմնարկութեան ներկայացուցչութեան կողմից կառավարութեան գործունէութեան հաւանութիւնը գտնելու. 12) Գտնելով, որ պարէնաւորման գործի աջողութեան այս վերջին ամենագլխաւոր պայմանը պիտի իրագործուի անմիջապէս,—Դուման անցնում է հերթական խնդիրներին»։

Ապա քննւում է վոլոստի համայնական (զեմստւային) վարչութեան հարցը։ Զեկուցանող *Սլեմպկովսկին* վերջացնում է հետևեալ խօսքերով. «Արդէն կէս դար է, որ դուք խօսում էք համայնական (զեմստւային) մանր միաւորի մասին. ժամանակ է գործի անցնելու»։ Ներքին գործերի նախարարութեան ժամանակաւոր կառավարիչ *Կուկոլ-Եասնոպոլսկին* յայտարարում է, որ նախարարութիւնը պատրաստ է աջակցել Դումային հարցը դրականապէս լուծելու։

*Չխէիձէն* դեկտ. 8-ի նիստում քննելով հարցը՝ ասում է, որ նախկին բոլոր սահմանափակումները պահել են իրենց ոյժը. իսկ ռուս կեանքի վերանորոգման ճամբան բռնելու մասին Դումայի բլոկի խոստումները մնացին միայն խօսք, և երկիւղ է յայտնում քննուող օրինագծի վիճակի մասին, որովհետև ոչ ոք չգիտէ՝ թէ եթէ այդ օրէնք դառնայ՝ ինչ ձևով կը գործադրուի։

*Կերենսկին* գտնում է, որ օրինագծի քննութեան համար անյարմար բոպէ է ընտրուած։ Նախ պէտք է լուծել ռուս քաղաքական կեանքի հիմնական խնդիրները. պէտք է ստեղծել նոր իշ-

խանութիւն, պէտք է երաշխիքներ ստանալ, որ Դումայի ցանկութիւնները կ'իրականանան... Մանր համայնական միաւորը հիմնաքարն է ամեն մի պետական կառուցուածքի։ Մինչդեռ ներկայ օրինագիծն իր ուժի մէջ է պահում նախկին բոլոր սահմանափակումները... Ժողովրդին կարելի է խաբել Ռուսաստանի արջային անկիւններում, բայց ոչ Պետական Դումայում։

Չ խ ե ն կ է լ ի ն 87-րդ յօդուածի առթիւ ասում է, որ Դուման ձախակողմեան պատգամաւորներին 8 նիստից զրկելով հնարաւորութիւն չտուեց կառավարութեան զեղծումների մասին խօսելու և ժողովրդի իսկական կարծիքը յայտնելու Գերմանիայի հաշտութեան առաջարկի առթիւ... Դառնալով դէպի Միլիւկովը նա ասում է. «Դուք յենարան չէք փնտռում ժողովրդի մէջ. դուք ամբողջ ճշմարտութիւնը չէք ասում երկրին. դուք ձեզ ըզգում էք սալի ու մուրճի արանքում։ Մի կողմից կառավարութիւնը, միւս կողմից՝ յեղափոխութիւնը... Մենք յանգում ենք փակուղու, որից ելք չկայ»։

87-րդ յօդուածի կարգով անցկացած օրինագծերի քննութեան ժամանակ Չ խ ե ն կ է լ ի ն յայտարարում է. Դումայի մեծամասնութիւնը մտադիր է չզրժել։ Դումայի մեծամասնութեան այդ գործելակերպը խաբէութիւն է երկրի հանդէպ։ Շ ի ն գ ա ր ե ւ ը պաշտպանում է Դումայի մեծամասնութեանը—բլոկին, ասելով, որ իրենք պիտի կռուեն կառավարութեան դէմ, միայն թէ օրինական միջոցներով և պիտի մերժեն 87-րդ յօդուածի կարգով անցկացրած օրինագծերը։ Իսկ Մ ա ս լ ե ն ն ի կ ո վ ն ասում է, որ 87-րդ յօդուածի կարգով օրէնսդրութիւնը ոտնակոխումն է ռուս պետականութեան սահմանադրական հիմունքների... Չարիքը կը դադարի միայն այն ժամանակ, երբ ստեղծուի օրէնսդրական հիմնարկութիւնների առաջ պատասխանատու նախարարութիւն (ծափեր ձախից և կենտրոնից)։

# Ներքին տեսութիւն

## ՆԵՐԿԱՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ *)

*

Հայի խնդիրը, այսօր, ամենակենսական հարցն է դարձած հայաշատ Ռուսաստանի համար։ Առանց ուրիշ պատճառներու բացատրութեան մէջ մտնելու, փոքրիկ հաշուով մը ցոյց տանք աշխատող ձեռքերու նուազման ու սպառող բերաններու շատութեան պատճառով յառաջացած այդ հարցը։

Չմոռնանք յիշեցնել ամենէն առաջ, որ դ ր ա մ ը չ է մ ե զ ի հ ե տ ա ք ր ք ր ո ղ ը, ա յ լ ն ի ւ թ ը՝ հ ա ց ը։ Դրամի առատութիւնը ապացոյց չէ հացի առատութեան, մանաւանդ այս պայմաններու մէջ։

Արդ, տրուած տեղեկութիւններուն նայելով, այսօր, Ռուսաստանի մէջ կը գտնուին 3—5 միլիոն փախստականներ, որոնք սպառողներ են միայն։ Սպառողներ են միայն          զօրքերը, որոնք երբեմն կը մշակէին։ Հասկնալի է մօտ 10 միլիոն սպառող բերաններու իրողութիւնէն յառաջացած «արհեստական սովը», արժէքներու բարձրացումը։

Վերցնենք Կովկասի հայ իրականութիւնը։ Մեզի տրուած թուերու համաձայն մօտ          հայ զօրք կը գտնուի ռուս բանակի մէջ, որոնցմէ ամենապակասը          գիւղացիներ, հողի աշխատաւորներ ըլլալու են։ Եթէ միջին հաշուով իւրաքանչիւր գիւղացիի տարեկան աշխատութիւնը գնահատենք 300 ռուբլով, այն ատեն կը տեսնենք, որ Կովկասի հայութիւնը դրամապէս կորսնցուցած է (200,000×300=) մօտ 60 միլիոն ռուբլի մէկ տարուայ մէջ, կամ նոյն համեմատութիւնով հողը կորսնցուցած է իր արդիւնքէն։ Դարձեալ ըստ ոմանց, Կովկասի մէջ, հայ փախըստականներու թիւն է մօտ 250,000, որը մէկ տարուայ մէջ սպառելու է մօտ 3 միլիոն փութ ցորեն կամ ալիւր՝ իւրաքանչիւր շնչի համար հաշուելով 12 փութ, առանց նկատի ունենալու ուրիշ նիւթեր՝ անհրաժեշտ սննդառութեան և հագնելիքի համար*)։ Արդ, երբ երկիրը մէկ տարուայ մէջ կորսնցուցած է 60 միլիոն ռուբլի աշխատող ձեռքերու հեռացման պատճառով և միւս կողմէն, 250,000 հայ փախստականները սպառած են 3 միլիոն փութ ցորեն կամ ալիւր (կամ 12 միլիոն ռուբլի, փութը 4 ռուբլիէ հաշուելով), ինչպէ՞ս կարելի է սպասել, որ կենսամթերքներու արժէքը, գլխաւորապէս ալիւրի արժէքը անասելի չափերու չհասնի, որ ալիւրի փութը 8—10 ռուբլիի չծախուի ստեղծուած «ներքնախանութային» դրութեան հետեւանքով։

Մենք չենք փնտռեր պատճառները աշխատող ձեռքերու հեռացման կամ փախստականներու ողողումին. կարևորն այն է, որ թէ մէկ և թէ միւս պատճառներով՝ անխուսափելիօրէն կեանքը թանգացած է և թէ որոշ դժգոհութիւններ կը ձեւակերպուին ապրուստի մասին հայթայթումին նկատմամբ, դժգոհութիւններ, որոնք թերեւս օր մը պոռթկումի կերպարանափոխուին։

Պէտք է ժողովուրդը փրկել սովածութենէ. պէտք է միջոցներ խորհել անմշակ ու խոպան ձգուած հողը արդիւնաբերելու համար. պէտք է նկատի ունենալ ապագան ու անոր հետ կապուած անպատեհութիւններ, որոնք թերեւս աւելի ծանր հետեւանքներու յանգին։ Միայն ատամօրսի խնդիրը չէ, որ մեզի կը մտահոգէ ու անոր հետ կապուած անպատեհութիւնները։ Ընդունելով անոնց մեծ կարեւորութիւնը, չմոռնանք նաև, առիթէն օգտուելով, հասարակական ապրումի ու միասնական աշխատանքի հիմքը ձգելու այսօրուանէ։ Հայրենի հողը անմշակ ու անպտուղ թողնելո՞ւ ենք։ Աւերակներ՝ երբեմնի սահմանէն այն կողմը. հայրենի օճախը պարպուած՝ սահմանէն այս կողմը։ Փախստականներու վերապրումին հետ ու անոր չափով, այսօր բացուած բացը լեցնելու, անմշակ հողը մշակելու, պարպուած օճախը վերկենդանացնելու կենսական հարցերը կը մտահոգեն մեզի ու մտահոգելու են բոլորին։

Աշխատող ձեռքերու թիւը նուազած է, սպառողներու թիւը աճած է։ Ի՞նչ ընել, որպէսզի չափով մը նախկին հաւասարակըշռութիւնը վերականգնուի։ Չենք խորհիր, որ մեր հետագայ առաջարկը վէրքը ամբողջութեամբ բժշկելու բնոյթն ունենայ, բայց կը խորհենք ու կընդունենք, որ մեր առաջարկն ընդհանրացնելով տեղի պայմաններուն նայելով, կարելի պիտի ըլլայ դրական հետեւանքի մը հասնիլ։

Մեր առաջարկն է փախստականներու օժանդակութիւնը խնդրել կամ պարտադրել հողի մշակութեան մէջ։ Վերցնենք հայ փախստականներու օրինակը։

Իրողութիւն է, որ Կովկասի հայ գիւղացութիւնը զրկուած է իր աշխատող ձեռքերէն, իսկ հայ փախստականը ապաստանարան գտած է հայ գիւղի մէջ։ Մէկ կողմէն արդիւնաբերութեան պակասութիւնը, միւս կողմէն սպառումի բարձրացումը ստեղծած են հակադիր դրութիւն մը։ Իր ստացած նպաստով փախստականը ոչ մէկ անգամ կարող է գոհացնել իր պահանջները. տեղացին պահած է իր աշխատանքի արդիւնքը ապագայի համար, կամ կը ծախէ խիստ բարձր գներով իր միւս պէտքերուն բաւականութիւն տալու համար։ Ոչ մէկը կը մտածէ հողը մշակելու և ոչ ալ միւսը ի վիճակի է այդ աշխատանքը կատարելու։

Պէտք է, որ հայ փախստականը մշակէ անմշակ ձգուած հայ հողը։ Հողի սակաւութիւնը պատճառ մը չէ այդ ձեռնարկին համար, եթէ նկատի ունենանք նաև հայ վանքերու ունեցած մեծ տարածութիւններով հողերը։ Մեր նպատակը չէ միայն նախապատրաստել սովի դէմ, այլև պայքարելու ենք առանց աշխատանքի սպառումին դէմ։ Մեր նպատակը չէ միայն հողի մշակու-

*) Տե՛ս «Համբաւաբեր» № 50։

*) Յայտնի է, որ գեներալ Թամամշեանի տուած տեղեկութիւններուն նայելով 25 միլիոնի կը բարձրանայ ամբողջ ծախքը։ Ա. Մ.

թիւնը, այլ նաև անհրաժեշտ է ամուլները յղացնել ու պտղաբերել՝ հայ օճախէն սկսած մինչև վանքերու մութ անկիւնները։

Հայ փախստականը—փախստականներն ընդհանրապէս—մղելու է աշխատանքի, որպէսզի նա իր ստացած նպաստի հետ ունենայ իր ճակտի քրտինքն ալ։ Ինչպէ՞ս և ինչ միջոցներով։

Իբր հայոց Գիւղատնտեսական Ընկերութեան հրահանգիչ առիթ ունեցանք պտտել Արարատեան դաշտի մեծ մասը և մօտէն ծանօթանալ Կովկասի հայ գիւղին և այնտեղ ապրող հայ փախստականին։ Հաստատելով բնիկ հայ գիւղացիի անխլանելի վիճակը աշխատող ձեռքերու բացակայութեան պատճառով, կը հաստատենք նաև հայ փախստականի անաշխատ ու անպտուղ կեանքը։ Ցաւալին այն է, որ ոչ միայն անաշխատ մնացած է հայ փախըստականը, այլև անաշխատ մնացած է իր տաւարը, իր գործիքն ու հողի մշակութեան համար անոր ունեցած աւելի օգտակար ծանօթութիւնն ու փորձառութիւնը, քան բնիկ գիւղացիինը։

Որպէսզի կարելի ըլլայ հայ փախստականը գործի մղել, նախ պէտք է ապահովել իւր ու իր տաւարի առօրեայ կեանքը։ Մենք կը ծանրանանք մասնաւորապէս տաւարի պահպանութեան վրայ, քանի որ տաւարը բոլորովին մոռացութեան մատնուած է մեր կողմէն։ Կարող ենք ըսել որ Երևան նահանգի մէջ ապաստանած հայ փախստականները կունենան ոչ պակաս քան 8,000 գլուխ լծկան տաւար։ Անասունի կերը խիստ թանգ, հացը անգտանելի, միւսը սակաւ, ինչ երաշխիք ունենք հաւատալու, որ փախստականի այդ մեծ հարստութիւնը պիտի ապրի մինչև յառաջիկայ գարունը։ 8000 գլուխ տաւարով մօտ 4000 արօր կամ 1000 գութան կարելի է լծել, ընդարձակ տարածութիւններով հողեր մըշակել ու արդիւնաբերել։

Անհրաժեշտ է անմիջապէս օգնութեան հասնիլ փախստականի տաւարի գոյութիւնը ապահովելու համար, առանց սպասելու ձևական գործողութիւններու, ինչպէս կենթադրէր յարգելի պատգամաւոր պ. Պապաջանեան, կամ «միջոցներ չկան» առարկութիւնն ընել՝ համաձայնելով Գիւղատնտեսական Ընկերութեան յարգելի նախագահ պ. Սահակեանի հետ։ Փախստականի տաւարը փրկելով, մենք փրկած կըլլանք հողի անմշակութիւնը որոշ չափով մը։ Ճիշտ է, որ չի կարելի բոլորովին յուսադրուել փախստականի տաւարներով, երբ յառաջիկայ գարնան անոնց մէկ մասը վերադառնայ իր սեփական հողին, բայց մոռնալու չէ, որ նպատակը նոյնն է այստեղ ու այնտեղ։ Չենք համաձայնիր նաև ձրի օժանդակութեան. տաւարը պարտաւոր է աշխատել։ Մեր առաջարկը ձմրան համար է, իսկ գարնան կարելի պիտի ըլլայ յետ ստանալ եղած օժանդակութիւնը՝ նախապէս որոշուած պայմաններով։

*

Սերմացուի հարցը նոյնքան կարևոր է։ Այժմէն իսկ նախաձեռնարկ ըլլալու է մասամբ մը ապահովելու յառաջիկայ գարնանացանքի սերմացուն. փոխադրութեան ու գնումի հետ կապուած դժուարութիւնները կարող են ըլլալ արագ ու կանխահոգ։ Տրամադրելի գումարը դրամագլուխ մը պիտի ըլլայ քիչ-քիչ դանձելի ու դարձեալ գործադրելի։

Ապագայի ծանր պատասխանատուութիւններն ու աւելի դժուարին միջոցներով հայթայթելիք հացի կենսական հարցը կը պահանջէ որոշ ու նշանակալից կորուստներ ալ։ Դրութիւնը փրկելու համար, մեր կարծիքով անհրաժեշտ է այժմէն իսկ յայտարարել դրամական խոստում բոլոր անոնց, որոնք որոշ քանակութիւնով ցանքս կանեն յառաջիկային, օրինակ մէկ պուդ հացահատիկի համար խոստանալ մէկ ռուբլի։ Մեր այս առաջարկը գործադրելով, բնիկները պիտի մղուին գործի անցնելու և որոշ զիջումներ ընել գործի լայն ու օգտակար իրականացման համար։ Ըսինք արդէն, որ դրամը չէ կարևորը, այլ նիւթերու գոյութիւնը։

*

Միայն հացահատիկներէ պատրաստուած հացով չէ, որ կարելի է ստամոքսը գոհացնել, մանաւանդ ներկայ ու ապագային ստեղծուելիք աւելի աննպաստ պայմաններու մէջ։ Մեր ունեցած տեղեկութիւններու համաձայն Կովկասի հայ գիւղացին սովոր չէ գարիի, կորեկի, եգիպտացորենի (maïs) ու գետնախնձորի մշակութեանը, կամ շատ աննշան չափով կը մշակուին այդ օգտակար բոյսերը։ Ոչ միայն այս բոյսերը խիստ օգտակար են ու կարող են ցորենի հացը փոխարինել շատ պարագաներու մէջ, կամ մեր խնամած տաւարներու համար մեծ օգուտ տալ, այլ նաև անոնց մշակութիւնը ընդունուած միջոց մ՚է (գլխաւորապէս գետնախնձորինը) հողը մաքրելու և պարարտացնելու համար։

Անհրաժեշտ է հայ գիւղի մէջ մտցնել այդ բոյսերու մշակութիւնն և հայ գիւղացին վարժեցնել անոնց գործածութեանը։ Ներկայ պայմաններու շարունակութիւնով սովը անխուսափելի է. պէտք է այժմէն իսկ միջոցներ ձեռք առնել՝ սովը կանխելու համար։

## ԱՅԼ ՊԷՏՔԵՐՈՒ ՀԱՄԱՐ

Հացի ու բանջարեղէններու հետ մեզի հարկաւոր են ուրիշ նիւթեր ալ։ Եթէ կարելի է հասակաւոր ու առողջ մարդիկ գոհացնել մի առ ժամանակ միայն հացով, բայց չէ որ մենք ունենք փոքրեր, որբեր, հիւանդներ ու վիրաւորներ և, չմոռնանք, անոնք աւելի լիակատար սնունդ կը պահանջեն, քան թէ հասակաւորներն ու առողջները։

Հաւկիթ, կաթ, մածուն, պանիր, իւղ, միս—անհրաժեշտ նիւթեր են փոքրերու և հիւանդներու համար։ Մէկ հաւը արժէ 3—4 ռուբլի, հաւկիթի հատը՝ 8—10 կոպէկ, պանիրի ֆունտը՝ 80 կոպէկ, իւղինը՝ 2 ռ. 50 կոպ., մսինը՝ 40 կոպէկ, և դեռ Թիֆլիսի մսավաճառները պահանջ դրած են մսի ֆունտը 50 կոպէկի բարձրացնելու։ Չմեղադրենք ուրիշները. ըմբռնենք ընդհանուր դրութեան պատճառներն և միջոցներ խորհենք անոնց դէմ պայքարելու համար։

Դժուար է, որ իւրաքանչիւր ընտանիք իւր հաւնոցն ունենայ, իւր այծն ու իր փոքրիկ անտեսութիւնը։ Ոչ, դժուար չէ. դժուարը սովորութիւնը փոփոխելն է։ Հաճելի է լսել աքաղաղի կանչը, աւելի հաճելի է սակայն ճաշակել թարմ հաւկիթ ու վառեակ։ Գիւղերու և փոքր քաղաքներու մէջ աւելի դիւրութիւններ կան, բայց ընդհանուր դասալքութիւն կը տիրէ մեր բոլոր գործերու մէջ, մղիչ ոյժ մը հարկաւոր է, որպէսզի վերկենդանանայ նախկին աշխուժութիւնը։

Յետոյ, միթէ դժուար է, որ իւրաքանչիւր որբանոց, գիշերօթիկ դպրոց, հիւանդանոց, հասարակական հաստատութիւն ունենայ հաւերու, սագերու, բադերու, հնդկահաւերու խումբ մը և կովերու տասնեակ մը։ Այս բոլորը ոչ միայն չափով մը պիտի լրացնեն անոնց պահանջները, այլ նաև հաւերու ու կովերու կանչը, թռիչքը, ցատկռտուքը, խաղը պիտի հրճուեցնեն փոքրերին ու հոգեկան թարմութիւն բերեն մահճակալի վրայ տառապող հիւանդին, որը եթէ գիւղացի մ՚է, անոնց ի տես իւր երէկը պիտի յիշէ և իր խրճիթը՝ արտասուալից աչքերով։ Դարձեալ չըմոռնանք մեր որբերն ու դպրոցականները, որոնց ուղեղին մէջ փաստօրէն մխելու ենք իրենց հողին ու ջուրին, գիւղին ու խըրճիթին վերադառնալու գաղափարը, արտի, հաւնոցի, դաշտի մէջ աշխատելու գեղեցիկ յատկութիւնը։

Միայն ստամոքսի հարցը չէ, որ մեզի կը մտատանջէ, այլև աւերակ օջախի, անմշակ հողի, անտէր մնացած ճուտի ու հորթի վերկենդանութեան ու վերմշակումին խնդիրն է, որը մեզի կը մղէ ըլլալ կանխահոգ ու հեռատես՝ մօտ երկու տարուայ տատանումներէ ու խարխափումներէ յետոյ։

## ՅԱՆՁԱՆՁՈՒՄՆ

Առաջի առթիւ իսկ կը դժուարանանք անմիջական առաջարկ ընելու, որովհետեւ մեր սխալ իրականութեան մէջ մէկ անհատ կամ ընկերութիւն ամենայն ինչ է, կամ ոչինչ է։ Աշխատանքի ու պարտականութեան բաժանում, ըստ կարողութեան ու ընդունակութեան, գոյութիւն չունի մեր մէջ, եթէ երբեք բոլորովին անտես առնենք ընդհանուր գործերու սխալ ղեկավարութիւնը։ Երէկի սօլկարը այսօր ուսուցիչ է, կամ երէկի հայկարանը, տեսուչը, գրասենեակի աշխատողը այսօր գիւղատնտես, տնտեսագէտ, ղեկավար ու ամենայն ինչ է՝ ձեռք բերած «լիազօր» պիտակին շնորհիւ։

Մենք այն համոզման ենք, որ կրթուած անհատը ունենալու է իր ասպարէզը (carrière), որոշ նպատակներով կազմուած ընկերութիւն մը միմիայն իր ընդգծած նպատակներու իրականացման ձգտելու է։ Այս հիմնական տեսակէտէն մեկնելով, մենք անհրաժեշտ կը գտնենք, որ երկրագործութեան ու տնտեսութեան վերաբերեալ խնդիրները, մեր իրականութեան մէջ, պարտականութիւն են «Հայոց Գիւղատնտեսական Ընկերութեան»։ Եւ նա անհրաժեշտ է չէ թէ միայն անոր համար, որ այդ ընկերութեան նպատակն է հայ գիւղացու ու հայ տնտեսութեան բարելաւումը, այլ նաև այն պատճառով, որ այդ ընկերութիւնը աւելի ձեռնհաս է տանելու այդ գործերը իր մասնագիտական ուղղութիւնով ու մասնագէտ ոյժերով։ Հայոց Գիւղատնտեսական Ընկերութիւնը պարտաւոր է կանգնել հայ գիւղացու—եկւոր ու բնիկ—կողքին և պէտք է, որ նա ներս մտնէ որբանոցներէ ու դպրոցներէ, այնտեղ իր մասնագիտական պարտականութիւնը կատարելու համար։

Բաւական չէ միայն ծրագիրներ կազմել։ Դրամ պէտք է. դրամը գործադրութեան հիմքն է։ Կը խորհինք, թէ ազգային հաստատութիւններ կամ ընկերութիւններ, պետութիւնը, անհատներ ոչ մէկ անգամ կը խնայեն իրենց օժանդակութիւնը։ Չմոռնանք, որ գործադրութեան դրուելիք գումարը շրջանառութեան մէջ մտնելու է միայն։

Աւերուած հայրենիքի վերաշինութեան հետ խորհինք մնացած բեկորներու ապրուստի, աշխատանքի ու բարոյական վիճակի պահպանութեան մասին ալ։ Հողէ ու ջուրէ զուրկ փախստականներու կարիքները հոգացած միջոցին բոլորովին անտեսութեան չտանք այն հողն ու այն օճախը, որոնք սիրալիր ընդունեցին իրենց հայրենազուրկ եղբայրները, և որոնք, սակայն, այսօր անմշակ ու անլոյս մնացած են աշխատող ձեռքերու բացակայութեան հետեւանքով։

Չմոռնանք նաև այն խոշոր ու գնահատելի բարոյական կապը, որը պիտի ստեղծուի նոյն հողին վրայ աշխատող բազուկներու, նոյն ակօսին մէջ թափուած քրտինքին շնորհիւ։

*Երևան* — *Ա. Մաքսապետեան*

---

## ԳԻՏԱԿԱՆ ՀԱՆԴՈՒՐԺՈՂՈՒԹԻՒՆ

Մարդկային միտքը իր արտայայտութիւնների մէջ բազմատեսակ արգելքների է հանդիպել։ Նրան ճնշել է և՛ եկեղեցին իր «հեղինակութեամբ», և՛ պետութիւնը իր ոստիկանութեամբ, և՛ հասարակութիւնը իր «կարծիքով»։ Մարդու միտքն ու խիղճը միշտ բռնադատուած են եղել կամ չարտայայտուելու կամ արտայայտելու ոչ-խնկական մտածածն ու զգացածը։

Եւ այսօր մարդկութեան յառաջդիմութեան ամենամեծ նուաճումներից մէկը խղճի և մտքի ազատութիւնը կամ կրօնական և գիտական հանդուրժողութիւնը պէտք է համարել։ Այսօր մարդկութիւնը աւելի համբերատար է դարձել դէպի ուրիշի կարծիքն ու դաւանանքը։ Եւ կրօնականի հետ գիտական հանդուրժողութիւնը—ուրիշի գեղարուեստական ճաշակի, գիտական տեսակէտի, փիլիսոփայական աշխարհայեացքի յարգանքը—այսօր արդէն կուլտուրականութեան չափանիշներից մէկը կարելի է համարել։ Կուլտուրական է այն հասարակութիւնը, ուր յարգւում են ուրիշի կարծիքը, ուր ապահով, պաշտպանուած է ուրիշի նաև հոգեկան գոյութիւնն ու անհատականութիւնը։

Այս տեսակէտից ևս դժբախտաբար մեր հասարակութիւնը շատ և շատ յետամնաց է։ Թէ առօրեայ յարաբերութիւնների մէջ, թէ մամուլում և թէ մանաւանդ դասախօսութիւնների ժամանակ մենք ուրիշի կարծիքը մինչև վերջը լսել և տանել չենք կարողանում։ Ամենահետաքրքրական դասախօսութիւններն անգամ վերջը, երբ «բանավէճ»ն է սկսւում, այնպիսի բնոյթ են ընդունում, որ մարդ ամաչում է, որ ներկայ է եղել։ Խօսքս աւելի կամ պակաս առարկայական և գիտական լինելու մասին չէ։ Թերութիւնները այդ շրջանում տանելի են։ Այդ բանից թերևս հասարակութիւնը շատ չէ նեղանում և տուժում։ Խօսքս աւելի շատ դասախօսելու և հակաճառելու անվայել, ուղղակի անկիրթ ոճի, վարք ու բարքի մասին է։

Հայ դասախօսն ու հակաճառողը, շատ չնչին բացառութեամբ, չեն սիրում զգալուոր, վերապահ, թէական խօսքը, որ այնքան անհրաժեշտ է գիտական լուրջ վերլուծութեան ու քննադատութեան համար։ Նրանք և իրենց թերուս լսարանը այդ բանը անպատրաստութեան և տգիտութեան նշան են համարում։ Եւ երևան է գալիս թերուսի հոգեբանութեան—թերի պատրաստութեան ու անտակտ տրամաբանութեան ամենատգեղ գիծը իր ողջ այլանդակութեամբ—մեծամտութիւնը։ Թերուսը միշտ մեծամիտ է, ինչպէս որ միշտ էլ համեստ է գիտութեան սպասաւորը։

Վերապահումը, զգուշաւոր արտայայտութիւն, «կարծեմը» չի սիրում թերուսը։ Նա արհամարհում է մտքի համեստութիւնը, ինչպէս միշտ անհամեստ են տգիտութիւնն ու թերուսութիւնը։ Յարաբերական ճշմարտութիւնները և գիտական ենթադրութիւնները—վարկածները (հիպոթէզները) անարժէք են նրա համար։ Նա սիրում է բացարձակ ճշմարտութիւններ, մտաւոր աղմուկ, բարձրաձայն խօսք—ապլոմբ։ Նա սիրում է «տիեզերական խնդիրներ (պրոբլեմներ)», առեղծուածներ լուծել խաղալով և՝ իբրև «գիտութեան վերջին խօսք» հրամցնել իր թերուս լսարանին։

Եւ այս երկուստեք թերուսի հոգեբանութիւնը կատարեալ և բիրտ անհանդուրժողութեան օրինակներ է տալիս շնորհիւ մեր կուլտուրական-քաղաքական յետամնացութեան։ Մեր ասիական իրականութեան մէջ դժբախտաբար երկու բան դեռ գերիշխող են—շուկան-հրապարակը և «քաղաքականութիւնը»։ Երկուսն էլ անհանդուրժող են, երկուսն էլ կրքոտ, անհամեստ ու բարձրաձայն մտածող*)—աղմկող։ Մեր քաղաքական յետամնացութեամբ քաղաքական հարցերը չափազանց հրատապ, այժմէական են դարձել և սերունդ են դաստիարակում մի անօրինակ ու ցաւալի անհամբերողութեամբ, նեղսրտութեամբ ու կրքոտութեամբ։ Բանն այնտեղ է հասել, որ մենք այլևս իրար լսել և իրար հասկանալ անկարող ու անընդունակ ենք։ Մենք անկարող ենք՝ հոգեպէս, և նոյն իսկ ֆիզիքապէս, տանել ուրիշի կարծիքը, ուրիշ կարծիք՝ քան մերը։

Եւ դժբախտաբար այս նոյն քաղաքական-կուսակցական անհանդուրժողութիւնը փոխադրել ենք նաև գիտութեան և գեղարուեստի ասպարէզը։ Թւում էր, թէ գոնէ այս շրջաններում մենք պէտք է մի քիչ եւրոպականացած լինէինք, որից նոյնպէս այնքան սիրում ենք ճամարտակել։ Բայց, ցաւօք սրտի, նոյն բարքերը, ու աւելի անտանելի արտայայտութիւններով,—

*) Դժբախտաբար այս յատկութիւնները, մանաւանդ «բարձրաձայն մտածելը» սկսելով Թիֆլիսից շարունակւում է և մեր կենտրոնում իր աւերածութեամբ։ Խմբագր.

և այստեղ։ Թւում էր, թէ գէթ մի տեղ, մի ասպարիզում նաև «Ախպայում» կիրքը, շուկայի իրար գոռում-գոչիւնով խլացնելու ու լռեցնելու բարքերը պէտք է մեղմանային, եթէ ոչ ընդմիշտ չքանային,—այդ ասպարէզը հանդուրժող ու ներողամիտ գիտութեան և գեղարուեստի ասպարէզը պէտք է լինէր։ Սակայն տարաբախտաբար նկատում ենք, որ ազատ մտքի ու լուրջ խօսքի կաճառներն ենք բերում մեզ հետ նաև մեր ասիական և «քաղաքական» կրքերն ու անհամբերողութիւնը։

Մենք այնպէս ենք դատախօսում և հակաճառում՝—կարծես իմաստութեան աստուածուհին Աթենաս-Պալլասը ինքը լինի մեր շրթներով յաւիտենական, միակ ու բացարձակ ճշմարտութիւններ պատգամելիս։ Մենք չենք կարող ընդունել, մեր միտքն ու հոգին այդ բանի համար շատ են նեղ, որ մեր մտածածն ու ասածը յարաբերական ճշմարտութիւն կարող է լինել կամ—հակառակորդի ասածն էլ գէթ ճշմարտութեան որոշ նշոյլ կարող է պարունակել, կամ էլ՝ որոշ հարցերի մասին առայժմ երկու կարծիք կարող են լինել։—«Այդ մասին երկու կարծիք լինել չի կարող, և այդ միակ ճշմարիտ կարծիքը, ինչ խօսք, որ իմ կարծիքն է»—ահա մեր այս ցաւալի իրականութեան և տարօրինակ մտայնութեան հանգանակը։

Այդպէս է միշտ տգիտութիւնը, թերուսութիւնը։ Տգիտութիւնը անհամեստ է։ Տգիտութիւնը անհանդուրժող ու հալածող է։ Տգիտութիւնը դոգմատիկ—դաւանամոլ է, կրքոտ ու անքննադատ։ Տգիտութիւնը՝ իր թէ ուրիշի՝ հեղինակութեան ու անսխալականութեան երկրպագու է։ Եւ տգիտութիւնն է իշխում մեր կեանքի բոլոր շրջաններում։ Գիտական համեստութեան համեստ ծաղիկը շատ վատ է աճում հայ երկնակամարի տակ։

Եւ այս գիտական անհանդուրժողութեամբ ու մտաւոր «ուղղափառութեամբ» մենք կստեղծենք մի իրօք «թերուս»—այն է՝ մեծամիտ ու դատարկամիտ, դաւանամոլ ու տառամոլ, անհանդուրժող ու աղմկող, հոգով ու մտքով աղքատ մի թշուառ սերունդ։ Մի երիտասարդութիւն, որ չի մտածում, այլ ծափահարում է, որ իր հարցասէր մտքի համար նորանոր խրթաններ չէ որոնում, այլ աղմկում է. որ իրեն զբաղեցնող և մանաւանդ դեռ ևս զբաղեցնելիք խնդիրների գիտական քննութիւնն ու պարզաբանումն չէ գտնում և մտազբաղ տուն վերադառնում բեղմնաւոր ինքնաշխատանքի և քննադատութեան համար, այլ «աւտօս էֆա»—վարդապետը, «ուսուցիչը ինքն է ասում» գոռալով ու «ձեռքերով մտածելով» կուրանում ու խլանում է և խլացնում ուրիշներին։ Գիտական լրջութիւնը, սառն տրամաբանութիւնը, առարկայական վերաբերմունքն ու «հաւանօրէնը» արժէք չունին նրա համար։ Նրա համար պատրաստութեան, գիտականութեան և ճարտասանութեան չափանիշներ են դարձել անվերապահ ու բացարձակ, վճռական պնդումները, ուժեղ, խայթող խօսքերն ու քամահար սրախօսութիւնները։

Յանուն այս դեռ ևս անպատրաստ, տպաւորուող, հեղինակութեան ենթարկուող սերնդի հոգեմտաւոր անկախութեան, լրջմիտ կրթութեան և ազատ զարգացման՝ թողնենք մեր չափազանց «ուղղափառ»—անգիտական ոճով դատախօսելը, մեր կրկէսային բանակռիւներն ու վիճաբանութիւնները—մեր գիտական անհանդուրժողութիւնը։

Վ. Խորէնի

---

## Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՆԱՄԱԿԸ

Ձեր թերթի 264 համարում պ. Ռ. Յովհանջանեան—անշուշտ շատ ազնիւ մղումով—հարկ է համարել իմ հիւանդութիւնը հրապարակախօսական խորհրդածութեան նիւթ դարձնել։

Խորապէս ցաւում եմ, որ այդ յօդուածը գրուել է. կրկնակի եմ ցաւում, որ խմբագրութիւնդ լոյս ընծայելով այն՝ նկատի չի առել գրուածքին նիւթ ծառայող գրագէտի շատ հասկանալի զգայնութիւնը (pudeur), ինձ էլ ստիպելով, թէև տակաւին տկար, գրիչ ձեռք առնել։

Հայ ազգը գուցէ ինձ անյայտ շատ մեղքեր ունի, բայց իմ հիւանդութեան մէջ այս խեղճ, այս ծուատուած ժողովուրդը բնաւ յանցանք չունի։ Բայց ասում են, հայ գրագէտի, հայ գրականութեան խեղճութեան, անապահովութեան մեղքը ամբողջապէս ծանրանում է հայ ազգի վզին։ Եւ ամեն անգամ, երբ որևէ հայ հեղինակ հիւանդանում կամ մեռնում է զրկանքների մէջ, այս հին ու ձանձրալի թեման յեղյեղւում է հազար ու մի ձևերով։

Թող ներուի ինձ ասել, որ ես այս հայեցակէտը չեմ բաժանել և չեմ բաժանում բնաւ. իմ խորին համոզմունքով հայ գրագէտի, արուեստագէտի, բանաստեղծի վիճակը իր իսկ ժողովրդի վիճակի ճշգրիտ պատկերն է, նրա մանրանկարն է, որ հեշտ է ցուցադրւում։ Ինչ որ է հայ ազգը, նոյնն են և պէտք է որ լինին հայ մտքի և արուեստի ղեկավարները։

Ես աւելին կասեմ. երբ մի ժողովրդի ֆիզիկական գոյութիւնն իսկ վտանգի տակ է, երբ նա խոշտանգուած ու արիւնլուայ, գլուխ դնելու տեղ իսկ չունի—մեղք է, անիրաւութիւն է պահանջել, որ նա իր գրագէտներին ու իր գրականութիւնն ապահովի։ Հայ մտքի, հայ ստեղծագործութեան վարպետները պէտք է որ անտրտունջ կրեն իրենց տառապող ցեղին վիճակուած ծանր խաչը, մինչև որ կը հասնեն լաւագոյն օրեր։ Անգլիացի գեղագէտ փիլիսոփայ Ռեսկինն մէկ տեղ իրաւացի կերպով ասում է. այն աշխարհում, ուր հիւծուած մանուկները կապտած շրթունքներով իրենց մայրերի ցամաքած ստինքներից թոյն են ծծում կաթի փոխարէն, յանցանք է գեղարուեստի մասին մտածել…

Իսկ մեր աշխարհում… Ա՜հ, մեր աշխարհը։

Ինձ գալով՝ ես փոթորկոտ, արկածալից կեանք եմ ունեցել, բայց դա իմ ընտրածն է. տառապել եմ ուժգնօրէն, բայց ինքս եմ փնտրել այդ համայնական տառապանքը. իմ ազգի դաժան վիթխարի ցաւը հոգիս է ծուատել, բայց ես սիրել եմ այդ առաքինի ժողովուրդը, ինչպէս մայրը սիրում է իր ամենից նուաղ, ամենից աւելի տանջուած զաւակը և նրա ցաւագին ժպիտը իմ հոգու լաւագոյն ցոլքն է միշտ։ Իմ ամենածանր օրերին իսկ լքումի, մոռացումի խեղդող մղձաւանջը հոգիս չի պաշարել երբէք, և—ինչու չասել—բարեկամներս ինձ բնաւ չեն լքել։

Եւ թէ ինձ վիճակուած է վերստին հայ կեանքի արիւն արցունքով ցօղուած ասպարէզը նետուել, դարձեալ կօրհնեմ իմ ճակատագիրը. իսկ թէ բաղդին հաճելի է, որ ես այսքան վաղաժամ լքեմ և գրիչ և խօսք, ապա դարձեալ երախտագէտ եմ հայ ժողովրդին, որի համար թէկուզ տառապեցի ու տքնեցի, բայց և նրա մայրական ժպիտը շատ յաճախ իմ հոգին ջերմացրեց։ Եւ թէև թոյլ ու անզօր, բայց շրթունքներս կը կրկնեն.

«Երանի նրանց, որոնք պայքարում, վտանգւում, տառապում են հայ ժողովրդի համար. այդ երկաթ, այդ առաքինի ժողովրդի»։

Ա. Ահարոնեան

Թիֆլիս, 28 Նոյեմբերի
(«Արև» թիւ 273)։

Այս նամակը երկու ձեռքով ստորագրում ենք։

Բախտաւոր է Ա. Ահարոնեանը, որին բարեկամները «բնաւ չեն լքել»։ Եւ եթէ կարիքաւոր հայ հեղինակներն առհասարակ շրջահայեաց լինեն, կը տեսնեն, որ ոչ մէկը իր բախտակից ժողովուրդներից գուցէ այնքան զոհաբերութիւն չէ անում որքան հայ ժողովուրդը։ Եթէ հայ ժողովուրդը մի պակասութիւն ունի, այդ իր աննման տարօրինակ միամտութիւնն է, որով յանձնում է իր բախտն ու գործերը շատ անգամ անընդունակ անձերի, որոնք շահագործում են նորա անպայման հաւատը և ի չարը գործ դնում նորա վստահութիւնը։

Սկայ

## ՄԱՀԱՑՈՒՑԱԿ

### † ՈՒՍՈՒՑՉԱՊԵՏ ՆԻԿՈՂԱՅՈՍ ԿԱՐԱԿԱՇ

*Նոյեմբերի 23-ին յանկարծամահ եղաւ, 55 տարեկան հասակում, Պետրոգրադի համալսարանի հոգենեարդաբանական, կանանց մանկավարժական և գիւղատնտեսա՛ն ճեմարանների հայազգի ուսուցչապետ Նիկողայոս Յովհաննէսեան Կարակաշը։*

*Հանգուցեալի նախորդները Կովկասից տեղափոխուել են Խրիմ և Խրիմի խաների օրով արքունիքներում վարել են բարձր պաշտօններ։ Հանգուցեալի մայրը, Վառվառէ, դուստրն էր յայտնի Գաբրիէլ քահանայ Պատկանեանի և քոյրը Ռափայէլ Պատկանեանի։*

*Ընտրելով համալսարանի բնագիտական մասնաճիւղը՝ նուիրւում է բնական գիտութեանց ուսումնասիրութեան և համալսարանն աւարտելուց յետոյ զբաղւում է գլխաւորապէս երկրաբանութեամբ (գէոլոգիա)։*

*Այնուհետեւ Կարակաշը տալիս է մագիստրական քննութիւն, տասը տարի անց (1897) պաշտպանում է իր առաջին քննաճառը (դիսերտացիան) ու ստանում հանքաբանութեան և երկրաբանութեան մագիստրոսի տիտղոս, իսկ 1906 թուին պաշտպանելով երկրորդ քննաճառը ստանում նոյն գիտութեանց դոկտորի տիտղոս։ Մինչև 1898 թիւը ղեկավարում էր ուսանողների համար կազմակերպուած գործնական պարապմունքներ, իսկ 1898-ից ստանում է ամբիոն և դասախօսում համալսարանում, ապա և ուրիշ բարձրագոյն դպրոցներում։*

*Հանգուցեալը մասնագէտ էր համարւում երկաթուղու գծեր անցկացնելու նախնական երկրաբանական հետախուզութիւններ կատարելու համար և նրա ջանքերի շնորհիւ շինուել են Ռուսաստանում մի շարք երկաթուղիներ, ինչպէս և 1895—97 թուերի ընթացքում Թիֆլիս—Կարս երկաթուղու գիծը։*

*Ուսուցչապետ Կարակաշը մեծ հռչակ էր վայելում թէ Ռուսաստանում և թէ արտասահմանում։ Նա աշխատել է Լոնդոնի և այլ մեծ քաղաքների երկրաբանական թանգարաններում և մասնակցել է մի շարք համագումարների։ Արտասահմանի մի գիտնական իր նոր գտած անդրջրհեղեղային խեցիներից մէկի անունը դրել է «խխունջ Կարակաշ»* («раковина Каракашъ»)։

*Հասարակական ասպարիզում ևս հանգուցեալը հանդէս է եկել իր ոյժերի ու ժամանակը ներածի չափ։ Նա ջերմ մասնակցութիւն է ունեցել Պետական Դումայի ընտրութեանց, ղեկավարել է մի շարք հասարակական ձեռնարկներ։ Այս կողմից նրա գործունէութեան թագն ու պսակը կազմում են նրա մասնակցութեամբ ու յատուկ աջակցութեամբ ստեղծուած Պետրոգրադի Գիւղատնտեսական Բարձրագոյն դասընթացները, որոնք այս տարի բոլորեցին առաջին տասնամեակը։ Չնչին գումարով սկսուած այդ դասընթացները շնորհիւ հանգուցեալի եռանդի, տոկունութեան և ջանքերի, պատերազմի սկզբին ունէին 300,000-ի եկամտացոյց և 1400 ուսանող-ուսանողուհի։*

*Նոյն ամսի 26-ին Պետրոգրադի Սմոլենսկեան հայոց գերեզմանատանը տեղի ունեցաւ Ն. Ի. Կարակաշի թաղումը։ Յուղարկաւորութեանը ներկայ են եղել ուսուցչապետներ, ուսուցիչներ, ուսանողներ և ուսանողուհիներ՝ հոգենեարդաբանական և կանանց մանկավարժական դպրոցներից և Պետրոգրադի Գիւղատնտեսական դասընթացներից։*

*Գերեզմանի վրայ արտասանուել են ճառեր. Գիւղատնտեսական դասընթացների խորհրդի նախագահ Վ. Ա. Սոնգայլօ՝ դասընթացների ուսուցչապետների և դասատուների անունից, դասընթացների ուսանողների կողմից մի ներկայացուցիչ և հոգենեարդաբանական դպրոցի ուսանողների ներկայացուցիչը, ընդգծելով հանգուցեալի օգտակար գործունէութիւնը։*

*Դագաղի վրայ դրուած էին մի շարք պսակներ վերև թուած հիմնարկութիւններից և ընկեր-ուսուցչապետներից։*

*Ն. Ի. Կարակաշը կտակել է 5000 ռ. Պետրոգրադի Գիւղատնտեսական դասընթացներին երկու թոշակաւոր ուսանող պահելու համար։*

*Հանգիստ վաստակաւոր ոսկերոտիքին և յարգանք նորա յիշատակին։*

---

## ԳԱՒԱՌ

*ՀԱՄԶԱՉԻՄԱՆ.—Անցեալ ամառուայ ընթացքում Համզաչիմանի և առհասարակ Ղազախի շրջանում կազմուել էր մի աւազակախումբ, որ ահաբեկում էր շրջանի խաղաղ ազգաբնակչութիւնը և գնդապետ Խալիլովը աւազակներին հետապնդելիս ծանր վէրքեր էր ստացել։*

*Շրջանի ժողովրդի գլխին ահաւոր չարիք եղող այդ աւազակախումբը վերջում բաժանուեց երկու մասի, որոնց մի մասը հեռացաւ թիւրք քոչուորների հետ, իսկ միւս մասը մնաց Համզաչիմանի շրջանում։*

*Հոկտեմբերին առաջին խումբը շրջապատուեց ժանդարմների կողմից, մի մասը կոտորուեց, մնացածն էլ մի կերպ կարողացաւ փախչել։*

*Երկրորդ խումբը պատսպարւում է մալականների գիւղերում, գլխաւորապէս Նիկիտինօ, Վասկրեսենովկա գիւղերում։ Նոյեմբ. 30-ին Համզաչիմանի տանուտէր Մատինեանը տեղեկութիւն է ստանում, որ երեք աւազակ երեկոյեան իջել են Նիկիտինօ գիւղի մի մալականի բնակարանում։ Անմիջապէս Մատինեանը 35 զինուած հայ երիտասարդներով գնում է և շրջապատում աւազակների ապաստանած բնակարանը առաջարկելով նրանց անձնատուր լինել։ Աւազակները պատուհաններից սկսում են բերդան տեսակի հրացանները դուրս ձգել և աղաղակել, որ անձնատուր են լինում։*

*Մատինեանն անմիջապէս ըմբռնում է, որ աւազակները կեղծում են և իրենց մօտ ունին երեքգծանի և մաուզէր տեսակի հրացաններ և մօտ գնալիս կարող են զոհեր պատճառել, արգելում է ընկերներին մօտենալու։*

*Մատինեանը պահանջում է աւազակներից, որ զէնքերը յանձնեն. նրանք տեսնելով, որ իրենց կեղծիքը չի յաջողւում, կրակում են կրկին և կռիւը տևում է 2 ժամ. գլխաւոր աւազակապետ Հասանն սպանւում և միւսները անձնատուր են լինում։ Այդպիսով այսուհետև խաղաղութիւն է հաստատուելու այս շրջանում։*

---

*ՍՈՒՐԱՄ, 22 նոյեմբերի.—Թանգութիւնն օրըստօրէ ծաւալւում է ու անտանելի դառնում կեանքը. մի ժամ առաջ գնած ապրանքի գինը կրկնապատկւում, եռապատկւում է. այսպիսի առասպելական գները ծանր մղձաւանջի պէս ճնշում է առանձնապէս խեղճ, անճար ժողովրդին. նիւթական անտանելի կացութեան մէջ է նաև տեղիս ուսուցչական խումբը։ Ճիշտ է, շնորհիւ Կ. Հ. Բ. Ը. և Բագուի Կուլտուրական Միութեան նպաստների ու աջակցութեան դպրոցի հոգաբարձութիւնը իր ժամանակին է վճարում ռոճիկները, սակայն մինչև այժմ կարելի է գէթ տանելի չափով գոյութիւն պահպանել առ առաւելն (մաքսիմում) 50—55 ռուբլիով. հարկաւոր է այս մասին լուրջ մտածել, այլապէս շատ դպրոցների փակման վտանգ է սպառնում։*

*—Կենսական անհրաժեշտ մթերքները շուկայում վաճառւում են հետևեալ գներով. ցորենի պութը՝ 5 ռ., եգիպտացորենի (սիմինդրի) 3 ռ. 50 կոպ., եղի ֆունտը 2—2 ռ. 50 կ., լոբու պութը՝ 6—7 ռ., ձուն հատը՝ 6—7 կոպ., փայտի սաժէնը՝ 70—80 ռ. և այլն։*

—Աւազակներն ու գողերը մեր շրջանում խոշոր աւերածութիւններ են անում. օր չի անցնի, որ որևէ վաճառականի վրայ չը յարձակուեն, թալանեն, կողոպտեն. անցեալ օրն էլ, երեկոյեան ժամը 6-ին երեք անյայտ չարագործներ մտնում են տեղիս վաճառական Մելքոն Լոռոյեանցի խանութը և զէնքի սպառնալիքի տակ յափշտակում են 5,000 ռ. և մօտ 1,500 ռուբլու էլ ոսկեղէնն ու արծաթեղէնը և ատրճանակի կոթով ծանր հարուած հասցնում գլխին։ Միխայլովո գիւղում գիշերը կոտրում են Աւետիս Մովսէսեանի խանութը և եղած-չեղածը տանում։

—Վերջապէս Սուրամն էլ արժանացաւ համագործակցական (կօօպերատիւ) խանութի. առայժմ բաց են թողնում օրական իւրաքանչիւր ընտանիքին 4—5 ֆ. հաց և ամիսը մէկ անգամ 2—4 ֆ. շաքարաւազ. վարչութիւնը մտադիր է նաև նաւթ բերել տալ. Սուրամում կամ ամենևին նաւթ չի ճարւում, կամ թէ ֆունտին 25—30 կոպէկ ենք վճարում։

—Տեղիս ծխ. հայոց դպրոցին 500 ռուբլի տարեկան նպաստ է նշանակել Բագուի Կուլտուրական Միութիւնը. բացի այդ . . . գեղի գնդապետ Փիրումեանից դպրոցիս հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացաւ 270 ռուբլի, տեղիս վաճառական Գրիգոր Բուռնուսուզեանից իւր հանգուցեալ ամուսնու յիշատակին 50 ռուբլի։

Յովհ. Դաւթեանց

---

ՀԻՆ-ՆԱԽԻՋԵՒԱՆ, 28 նոյեմբ.—Յայտնի է, որ Նախիջևանի հայութիւնը սկզբնական դպրոցի շէնք չունենալու պատճառաւ, քանի տարուց ի վեր իւր երկսեռ եկեղեցական-ծխական դպրոցները զետեղել է վարձու շինութիւններում։

Եւ առաւել քան՝ տասնեակ տարի է, որ դպրոցական սեպհական շէնք ունենալու խնդիրը զբաղեցնում էր Նախիջևանի հայութեան։

Վերջապէս հայր փոխանորդ Սիոն վարդապետի հրաւիրանքով և նախագահութեամբ կազմուած ծխ. բազմամարդ ժողովում, որ տեղի ունեցաւ հանգուցեալ Կարապետ աստուածաբան Սրբազան Եպիսկոպոսի տարելիցի հոգեհանգստեան կարգի կատարումից յետոյ, ընդհանուր ժողովականների միահաճ յօժարութեամբ վերջնականապէս լուծուեց այդ գորդեան դարձած հանգոյցը։ Որոշուեց գնել պ. պ. Բունիաթեանի և Մինասեանի ի նկատի ունեցած ընդարձակ և գեղեցիկ շէնքը իւր ամբողջ տարածութեամբ, որը գտնւում է քաղաքի առաջաւոր մասում, կից նոր շինուելիք կիսավարժարանին (պրօգիմնազիային)։

Գնուելիք շէնքի գինը կալուածատէրերի կողմից առաջարկուած է քսան հազար ռուբլի, չնայած, որ այդ շինութիւնը նստել է իրենց վերայ առաջարկուած գնի կրկնակին։

Այս մի նշանակալից պատմական օր էր Նախիջևանի համար։ Թէ հոգեհանգստին, և թէ ծխ. ժողովի բացման՝ Հայր Սիոնը խօսեց պատշաճը։

Հ. Ա.

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է պ. Սեդրակ Յովհաննիսեան Ժամհարեանից 1000 ռ., որից 500 ռ. յօգուտ գաղթականների արհեստանոցի և 500 ռ. յօգուտ Գր. Զալխուշեանի հրատարակելիք «Կարմիր գիրք»-ի ֆոնդի, բացի այդ 100 ռ. մշտական անդամութեան համար։

Խորհուրդը որոշեց յայտնել նորան շնորհակալութիւն և տալ մշտական անդամութեան մրցագիր։

—Պ. Տ. Աֆրիկեանից Զէգվի գիւղի դպրոցի առաջին կիսամեակի նպաստ 250 ռ.։

—Աստուր Զաքարեան Բալահայրումեանից իւր կնոջ Նուարդի դագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ որբերի 1000 ռ.։

—Խաչատուր Նադինեանից նոյն նպատակով 50 ռ.։

***

Վլադիկաւկաւկազի քահանայ Յ. Սառիկեանը իւր հանգուցեալ մօր յիշատակին նուիրում է իւր ծննդավայր Վերին-Աղդանի ծխական դպրոցին 100 ռ., յանձն է առել գրադարանի հոգսը և 2 գաղթական աշակերտուհու դպրոցական ծախսը։ Իսկ Ա. Սառիկեանը նուիրեց նոյն առթիւ գաղթականական դպրոցի աշակերտութեան 10 ռ.։

### ՃԻՒՂԵՐ

Մեղրու ճիւղի վարչութիւնը որոշել է առաջիկայ տարուանից բանալ կարուձևի արհեստանոց։

***

Դուշէթ.—Դուշէթի ճիւղի վարչութիւնը միջնորդութիւն է յարուցել ընդունել Ընկերութեան մշտական անդամներ՝ պ. պ. Վահան Թեզեանին և Գրիգոր Սիմէօնեան Միրաքեանին, որոնք վճարել են 100-ական ռուբլի։

***

Շուլաւէր.—Շուլաւէրի վարչութիւնն ևս խնդրում է տալ մշտական անդամութեան մրցագիր հետևեալ անձանց՝ տ. Յոյս Յովհաննիսեան Զարգարեանին և պ. Վաղարշակ Մեսրոպեան Զարգարեանին։

***

Սուխումի ճիւղի վարչութիւնից նոյն նպատակով պ. Մելքոն Աբրահամեան Տէրտէրեանի մասին։

### ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

15 դեկտեմբերի կայացաւ Հ. Կ. Կոմիտէի նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։ Այդ նիստին հրաւիրուած էին և ներկայ էին Հ. Գ. Ընկերութեան, Նպաստամատոյցի և Շինարարական Ընկերութեանց ներկայացուցիչները, Կենտրոնական Կոմիտէի որբանոցների յանձնաժողովի անդամները, և պ. պ. Ռ. Զօրեանը, Անդրանիկ և Կոմիտէի Վանի շրջանի լիազօր պ. Գ. Օհանջանեան։

Նախագահը յայտնեց, որ զբաղմունքի գլխաւոր առարկաները լինելու են աշխատաւորների խմբեր կազմել անգործ գաղթականներից և Վանի լիազօր պ. Օհանջանեանի զեկուցումն Վանի հայ ժողովուրդի դրութեան մասին։

Աշխատաւորների խմբեր կազմելու խնդիրը, ինչպէս զեկուցեց պ. Նախագահը, առաջ է եկել շնորհիւ հետևեալ հանգամանքի. Ներքին գործոց նախարարին կից գործող առանձին խորհրդակցութիւնը դեռ սեպտեմբեր ամսում որոշել է գաղթականների նպաստը կրճատել 50%։ Գաղթականների գործերի գլխաւոր լիազօր գեներալ Վ.Մ. Թամամշեանը, ի նկատի առնելով Կովկասեան ճակատի գաղթականների դրութիւնը, ներկայացրել է զեկուցումն Կովկասի Փոխարքային, որ նպաստը չը կրճատուի։ Փոխարքան համաձայնութիւն է տուել և զեկուցումն ներկայացուել է Պետրոգրադի առանձին խորհրդակցութեան, որը սակայն մերժել է։ Այդ մասին Հ. Կ. Կոմիտէի կողմից հեռագիր է ուղարկուած Պետական Դումայի անդամ Մ. Աջեմեանին, Ա. Սարիբէգեանին և Գ. Տիգրանեանին, որ աշխատեն զեկուցումն յարգելու համար, բայց չի յաջողուել։

Այժմ գեներալ Թամամշեանի օգնական, գնդապետ Ա.Ս. Սիլ-

վիցկին առաջարկել է Կենտրոնական Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանին, որ Կոմիտէն միւս Ընկերութիւնների հետ կազմակերպի աշխատաւորների խմբեր գաղթականներից, որպէսզի ստացուած գումարը բաւականացնի գաղթական կանանց, երեխաներին և աշխատանքի անընդունակներին, և գեներալ Թամաշեանի կողմից ամենայն աջակցութիւն ցոյց կը տրուի գաղթականներին գործ գտնելու և տեղափոխելու համար։ Այս խնդրի մասին երկարատև մտքերի փոխանակութիւնից յետոյ ժողովը եկաւ այն եզրակացութեան, որ առաջարկութիւնը արժանի է ուշադրութեան և որոշուեց ընտրել աշխատանքի բիւրօ, որին յանձնուեց կազմել ծրագիր, նախահաշիւ, բանակցութիւն սկսելու միւս վայրերի հետ և դիմելու գործի, որպէս զի գաղթականները գէթ մինչև գարունը ունենան աշխատանք։ Աշխատանքի բիւրոյի անդամներ ընտրուեցին պ. Յ. Յ. Տէր-Միրաքեան, Ն. Մատինեանց, Գր. Վարդանեանց, Ստեփանեանց, իսկ պ. Անդրանիկին և Զօրեանին յանձնարարուեց հրաւիրել երկու անդամ էլ տաճկահայերից։

Գ. Գր. Օհանջանեանցը ներկայացրեց մի շատ ընդարձակ և հետաքրքրական զեկուցում Վանի հայ ժողովրդի դրութեան և տեղական իշխանութեան վերաբերմունքի մասին։

Զեկուցանողը հաստատում էր, որ այժմ մօտ 18,000 հայ կայ Վանում և նրա շրջանում, որոնք բոլորը, բացի Թեմական շրջանի ժողովուրդից, շատ նեղ դրութեան մէջ են. մեծ օգնութիւն է հասցնում նրանց Կ. Հայոց Բարեգ. Ընկ., պետական միջոցներով բացուած պահեստը, որը միաժամանակ և բաւականին ներմացու է տալիս։ Գ. Օհանջանեանի կարծիքով անհրաժեշտ է այժմեանից լուրջ կերպով զբաղուել գարնանային ցանքսերի խնդրով և հոգալ, որ իշխանութիւնը թոյլ տայ կազմակերպելու ինքնապաշտպանութիւն քրդերի դէմ։ Զեկուցումը յարոյց շատ կարևոր հարցեր և ներկայ եղողները արտայայտուեցին։

Որոշուեց սերմացուի մասին խորհրդակցել Միացեալ Ընկերութիւնների նիստում։ Կենտրոնական Կոմիտէն վճռեց, բացի բացուած երեք դպրոցներից, Վանի շրջանում բացել ևս երկու դպրոց։ Դպրոցական երեխաների թիւը հասնում է 2,000 հոգու։

Նիստին ներկայացան երկու Սասունցի, որոնք պատմեցին, որ Սասունի 12,000 հոգուց ազատուել է կոտորածից և հասել է Ալէքսանդրապոլ 1,300 հոգի։ Սասունցիների պատմութիւնը կոտորածի մասին ցնցում էր ժողովականներին։ Կենտրոնական Կոմիտէն որոշեց անմիջապէս իր լիազօր Կ. Ղազազեանի ձեռով ուղարկել 5,000 ռ. բաժանելու Սասունցիներին. այդ գումարը ստացուել է իբրև նուէր պ. Յ. Թամամշեանից։

Այնուհետև զեկուցեցին նոր ստացած հեռագրերը, 1. Տրապիզոնից՝ հայր Մելեանից, որ այնտեղ բացուել է Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղ և որ սկսել են գալ գաղթականներ Երզնկայից։

Որոշուեց ուղարկել 1000 ռ.։ 2. Արդահանից պ. Մինասեանը հեռագրում է, որ Օքրոպակերտցիներին և միւս աւերուած Զաւշերի հայ գիւղերի համար հարկաւոր է 2,500 պ. ցորեն։

Որոշուեց ուղարկել 5000 ռ.։ 3. Պետրոգրադից ուսուցչապետ Վարդանեանը հեռագրում է, որ Կենտրոնական Կոմիտէի համար ստացուել է 10 արկղ դեղօրայք Լոնդոնի Կոմիտէից և հարկաւոր է 640 ռ. ծախս։

Որոշուեց ուղարկել այդ գումարը։ 4. Սարիղամիշից Հ. Բ. Ը. ճիւղի նախագահ Դուրգարեանից, որ Ալէքսանդրապոլ ուղարկել են 45 սասունցի որբ Կենտրոնական Կոմիտէի որբանոցը։

5. Լոնդոնից օր. Ռոբինզոնը պ. Ս. Յարութիւնեանին հեռագրով փոխադրել է 4,650 ռ. հիմնելու Ալէքսանդրապոլում սասունցիների համար որբանոց։

Նիստը փակուեց ժամ. $12^{1}/_{2}$ գիշերուայ։

* * *

Հայկ. Կ. Կոմիտէի գաղթականական նպաստաբաշխ Մասնաժողովի միջոցաւ 1916 թ. դեկ. 4-ից—10-ը կոյր (66), հիւանդ, անկեալ գաղթականների վճարուած է 112 ռ. 51 կ.։

* * *

Հ. Կենտր. Կոմիտէի արհեստանոցը յայտնում է իր խորին շնորհակալութիւնը Արտիւշա, Թորգոմ և Միքայէլ Ագատեաններին, որոնք տօների առթիւ նուիրեցին 75 ռ. յօգուտ արհեստանոցում աշխատող փախստականների։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Փ ո թ ի—Օհանջանեանից.

Այսօր ուղարկեցի Թիֆլիս 8 վագոն ալիւր. վաղը կուղարկեմ նոյնքան Աղստաֆա։

—

Ե կ ա տ ե ր ի ն ո դ ա ր—Մելքոնեանից.

Ծարլինսկի կայարանից Թիֆլիս ուղարկեցի 5 վագոն ալիւր. Պարաշինսկի կայարանից Սարիղամիշ 4, Սվետոյ Կրեստից Գանձակ մէկ վագոն։

—

Ե կ ա տ ե ր ի ն ո դ ա ր—Մելքոնեանից.

Եյխոտովօ կայարանում գնեցի 20 վագոն եգիպտացորեն. շտապով ուղարկեցէք փոխադրութեան կարգադրագիր (нарядъ)։

---

### ՓԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Դեկտեմբերի 9-ից—15-ը

Ալիւր՝ ուղարկուած է հետևեալ վայրերը՝ Կոլագիրան, Աղստաֆա, Սանդար և Երևան մէկ-մէկ վագոն, Ալէքսանդրապոլ՝ 2, Վաղարշապատ՝ 4, Իգդիր՝ 3, Ղամարլու՝ 1, Ղարաքիլիսա՝ 2, Սարիղամիշ՝ 4 և Կարս՝ 2, ընդամենը 22 վագոն։

Բրինձ՝ ուղարկուած է Սարիղամիշ և Երևան մի-մի վագոն, Թիֆլիսի պահեստում ստացուած է 4։

Թէյ՝ ուղարկուած է Կարս՝ 500 ֆ. և Սարիղամիշ 1000 ֆ.։

---

## Ք ր ո ն ի կ ո ն

Քանիցս Հ. Կ. Կոմիտէն կառավարութեան մօտ կատարած իր դիմումների մէջ ցոյց է տուել, որ որբերի համար յատկացուած ամսական 15 ռուբլու գումարը միանգամայն անբաւարար է։ Այժմ փախստականների գլխաւոր լիազօր գեն.-մայոր Թամամշեանը Փոխարքային է ներկայացրել այդ մասին մի պատճառաբանեալ զեկուցում. Փոխարքան իր հաւանութիւնը տուել է և ուղարկել Պետրոգրադում ներքին գործոց նախարարութեան կից կազմուած մի առանձին խորհրդի քննութեան համար, նշանակելով իւրաքանչիւր որբի համար ամսական 21 ռ.։

Հ. Կ. Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեան հեռագրել է Պետական Դումայի հայ անդամներին՝ Միք. Պապաջանեանին, Մ. Աճէմեանին, ապա Պետրոգրադում առանձին խորհրդակցութեան հայ անդամներին՝ պ. պ. Ա. Սարիբէգեանին և Գ. Տիգրանեանին, որ աշխատեն յատկապէս այդ ուղղութեամբ։

Քաղաքային վարչութիւնը դիմել է կովկասեան բոլոր ինքնավարութիւններին և խնդրել՝ պաշտպանել տեղական լեզուները միջնակարգ դպրոցներում պարտաւորիչ դարձնելու համար Թիֆլիսի քաղաքային ինքնավարութեան միջնորդութիւնը։

***

Մի խումբ երիտասարդ գրասէրներ սկսել են նեղ շրջաններում գրական դասախօսութիւններ կազմակերպել։

***

Քաղ. Դուման իր վերջին նիստում ընդունեց քաղ. վարչութեան որոշումը՝ բանալ գրադարան-ընթերցարան Հավլաբարում՝ Գր. Արծրունու անունով և ընթերցարան Վերայում՝ Ակակի Ծերեթելիի անունով։

***

Քաղ. Դուման որոշեց Վերայի քաղաքային դպրոցը անուանել Գ. Սունդուկեանի անունով։

***

Տեղական լեզուները կովկասեան միջնակարգ դպրոցներում պարտադիր դարձնելու հարցը քննուեց Քաղաքային Դումայի նիստում. պարզւում է, որ օրէնքով տեղական լեզուների աւանդումը պարտադիր է միայն վարժապետանոցներում։ Դուման որոշեց Կովկ. Ուսումն. հոգաբարձու Ռուդոլֆի միջոցով դիմել մինիստրութեան, որ տեղական լեզուների աւանդումը պարտադիր դառնայ միջնակարգ դպրոցներում։

***

Մոսկուայում պ. Ամիրեանի ղեկավարութեամբ կազմուել է մի հրատարակչական ընկերութիւն։

***

Հ. կ. Կոմիտէի շրջերի պահեստի համար գնուել է 211,515ռ. 34 կ. ապրանք, իսկ ուտեստեղէնի պահեստի համար 9,894 ռ. 10 կ.։

***

Էջմիածինում կայանալիք խորհրդակցութիւնը հայ գաղթականական կազմակերպութիւնների, դեռ ես լուծումն չի ստացել, և այս դեկտեմբերի վերջը, ինչպէս որ սպասւում էր, չի կայանալ։

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՎԵՀ. ՀԱՅՐԱՊԵՏԸ ԵՒ ԼՈՐԴ ԲՐԱՅՍ

Վեհ. Կաթողիկոսը գնահատելով Լորդ Բրայսի հայկական դատին մատուցած ծառայութիւնները, սակէ մի քանի ամիս առաջ այդ մեծանուն Անգլիացուն ուղարկել էր օրհնութեան և բարեմաղթութիւնների մի կոնդակ՝ գրուած գեղեցիկ տառերով և զարդարուած հայկական մանրանկարչութեամբ։ Եւրոպայի Հայոց Առաջնորդ Իւթիւճեան արքեպիսկոպոսը, որին ուղարկած էր Վեհափառը իր կոնդակը, ուղեկցութեամբ Լոնդոնի և Մանչեստրի հայ գաղութներից կազմուած մի պատգամաւորութեան, անցեալ շաբաթ օր Լորդ Բրայսին ներկայացուց այդ կոնդակը իր տան մէջ։

Իւթիւճեան Սրբազանի մի քանի գնահատական խօսքերին ի պատասխան Լորդ Բրայս տուաց մօտաւորապէս հետեւեալը.

«Խնդրեմ հաւաստիացրէք Նորին Վեհափառութեան Կաթողիկոսին, որ ես շատ զգացուած եմ և գնահատում եմ այն բարի ցանկութիւններն ու ազնիւ խօսքերը ի վարձատրութիւն իմ աննշան ծառայութիւններին, որ ես կարողացել եմ մատուցանել հայ ազգին։ Ես կը ցանկայի ունենալ հնար աւելին անելու. բայց այն փոքր ծառայութիւնը, որ ես կարողացած եմ մատուցանել, կատարուած է բոլորանուէր անկեղծութեամբ։

40 տարի առաջ Հայաստանը այցելելուցս ի վեր, ես համոզուած եմ, որ հայերը միակ ժողովուրդն են, որոնց վերապահուած է Փոքր Ասիոյ ազգաբնակութեան բարգաւաճման և վերականգնման գործը։ Ոչ մի ժողովուրդ այնչափ չէ տառապել իր կրօնի համար, որչափ Հայերը, և ոչ մի ժողովուրդ չէ ընծայել աւելի նահատակներ, քան հայերն իրենց քրիստոնէական հաւատքի համար։ —Նրանց տառապանքները զուցէ եզական են պատմութեան մէջ, իսկ վերջին հալածանքները գերազանցել են իրենց անցեալ աղէտները։

Սակայն տառապանքի այս սև օրերին անգամ կայ յոյսի և լոյսի մի նշոյլ։ Ես յոյս ունիմ և հաւատում եմ, որ այլեւս անհնար է քրիստոնեայ պետութիւնների համար—անկարելի է այժմ Գերմանիան նկատել իբրև քրիստոնեայ—գէթ անհնար է Անգլիոյ, Ֆրանսայի, Ռուսաստանի և Իտալիոյ համար Հայաստանը թողնել տաճկական լծի տակ։ Ես վճռապէս հաւատում եմ, որ թիւրքական իշխանութեան ջախջախումից յետոյ՝ հայ ժողովուրդը մի անգամ էլ ոտքի կը կանգնի մի սերունդի տեւողութեան ընթացքում և կը կատարէ իրեն վերապահուած առաքելութիւնը»։ Ապա Լորդ Բրայս խնդրեց Արքեպիսկոպոսից Վեհ. Կաթողիկոսին հաղորդել իր անկեղծ շնորհակալութիւնները օրհնութեան և գնահատութեան կոնդակի համար և հաւաստիացնել Ամենայն Հայոց Սրբ. Կաթողիկոսին, որ ինք այդ կոնդակին վրայ պիտի նայի իբրև մի թանկագին սեփականութեան և միշտ պիտի պահէ մեծարանքներով և խնամքով։

### «ՀԱՅԿԱԿԱՆ ԴՐՕՇԱԿԻ ՏՕՆԸ» ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

Մանչեստրում և շրջակայքում «Հայկ. Դրօշակի Տօնի» յաջողութիւնից ի վեր, «Հայկ. Կարմիր Խաչի և փախստականների ֆոնդը» յանձին օր. Ռապինսընի կազմակերպել է հայկական դրօշակի տօներ Անգլիոյ զանազան քաղաքներում և գիւղերում, ստանալով նիւթական և բարոյական գոհացուցիչ արդիւնք։

Անցեալ հոկտ. և նոյեմբեր ամիսներում այդպիսի տօներ կազմակերպել են Հուիթբիում, Լէչիպանքում, Նորթբէրվիկում, Գրին ավ Ալընում, Դէրնհօլ, Դէննի և Լիդս քաղաքներում։ Մի քանի օրից մի մեծ տօն կազմակերպուելու է Լիվըրպուլում։

«Հայկ. Կարմիր Խաչի ֆոնդին» փող են ուղարկել զանազան գաւառական և քաղաքային իշխանութիւններ «Դաշնակիցներին օգնող» անգլիական զանազան ֆոնդերից։

Արշակ Սաֆրաստեան

### ԼՈՆԴՈՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Լոնդոն, 10 նոյեմբերի

Ամեն տարի Նոյեմբեր 9-ին Լոնդոնի միջնաքաղաքը ընտրում է իր Նոր Լորդ Մէրը, այսպէս ասած Լորդ քաղաքագլուխը։ Ինչպէս յայտնի է, Լոնդոնի միջնաքաղաքը կենտրոնն է բովանդակ աշխարհի բարձրագոյն փինանսների և այդ հանգամանքով մանաւանդ, ներկայ պատերազմի օրերին առանձնապէս, բաղկերակը դաշնակից ազգերի տնտեսական մատակարարման ու պարենաւորման։

Միջնաքաղաքի ամենահին աւանդութիւններից մէկն է, որ նորընտիր Լորդ-Մէրը, այս տարի Sir William Dunn մի քաղաքացիական ճաշկերոյթով պէտք է սկսի իր պաշտօնավարութիւնը։ Նրա ամենապատուաւոր հիւրերն են օրուան կառավարութեան անդամները. Լոնդոնի ականաւոր քաղաքացիները և դիպլոմատիկան ամբողջ մարմինը։

Նոյնպէս տարիներից ի վեր սովորութիւն է եղել, որ օրուան

կաբինէտի առաջին մինիստրը ի պատասխան Նորընտիր քաղաքացիի բաժակին, արտասանում է տարուան ամենաժեծ քաղաքական ճառերից մէկը։ Ահա այդ առիթով Ասկուիտը երէկ մի ճառ խօսեց, սկսելով հայկական հարցի ներկայ դրութիւնից։

«Որչափ ես յիշում եմ, վերջին 9 տարիների ընթացքում, որմէ հետէ ես եղել եմ վարչապետ, ասաց պ. Ասկուիտ, գրեթէ ամեն տարի այս ժամանակ եղել են ներքին կամ արտաքին մրտահոգութեան բացառիկ և առանձին պատճառներ։ Ես յիշում եմ ինչպէս տարիներ առաջ մենք կանխահաս կերպով ծափահարեցինք այսպէս ասած Երիտասարդ Թիւրքերի յաղթանակը Աբդիւլ Համիդի արիւնաներկ բռնակալութեան վրայ։ Այդ յաղթանակը չարգարացրեց իր վրայ դրուած յոյսերը։ Այդ օրերին մենք ակնկալում էինք Օսմ. կայսրութեան ներքին վերածնութեանը։

Ի դերև ելած են մեր յոյսերը և կարծում եմ, որ այժմ ամենքս էլ հասկանում ենք, թէ թիւրքական տիրապետութեան շարունակումը Եւրոպայում—ուր նա միշտ եղել է օտարական—պիտի նշանակէ, որ Թիւրքը այժմ միմիայն պիտի լինի վասալ և ստորակարգ գործակալ գերմանական շահերին և փառասիրութիւններին։

Թոյլ տուէք ինձ ձեզ տալ գործնական, բայց յոյժ ողբերգական մի լուսաբանութիւն։ Գերուած ազգերում Օսմանեան տիրապետութիւնից ամենից շատ տառապողներ եղել են հայերը, որոնց ամբողջական կոտորածը վերջին երկու տարիների ընթացքում ցնցել է բովանդակ քաղաքակիրթ և քրիստոնեայ աշխարհը։ Մեր սեփական երկրում, Ռուսաստանում, և կարծում եմ շատ աւելի Ամերիկայի Միացեալ Պետութիւնների մէջ, այս ազգի անհաւատալի տառապանքները յարուցել են խորունկ համակրութիւն, և երեք երկրներն էլ հաւաքել են մեծ գումարներ նրանց օգնելու և ապագայում նրանց իրենց հայրենիքում տեղաւորելու համար։

Կարիք չկայ ասելու որ, ասաց պ. Ասկուիտ, Նորին Վեհափառութեան կառավարութիւն (Մեծն Բրիտանիա) նայում է այդ ջանքերի վրայ խորունկ համակրութեամբ, և վճռել է, որ պատերազմից վերջ այս վաղեմի ժողովրդի համար պէտք է սկսի ազատութեան եւ փրկութեան մի նոր շրջան։ (Ծափեր)։

Սակայն Գերմանիան, Թիւրքիայի տէրը, որ մի մատի շարժումով կարող էր կասեցնել, և եթէ ցանկանար՝ արգելել մի քրիստոնեայ ժողովրդի դէմ սկսուած կոտորածների և հալածանքի այդ կազմակերպուած պայքարը—նայել է դրանց վրայ առանց շարժուելու, առանց յուզուելու, անդորր և, որչափ ծանօթ է մեզ, ինքնահաճ կերպով։ Դա մի նշանակալից օրինակ է, թէ ինչ կարող է նշանակել մի գերմանացած Թիւրքիա»։

***

Բովանդակ մամուլը ողջունում է պ. Ասկուիտի ճառը իբրև միահամուռ ցանկութիւնը բրիտանական կայսրութեան։

Սկովտիական օրգան «Scotsmau» մի խմբագրականով պահանջում է հաշտութեան բանակցութեան րոպէին Բելգիայի և Սերբիայի կողքին դնել Հայաստանը և նրա համար էլ պահանջել բարոյական ու նիւթական փոխարինութիւն։

«Yorhshire Post» յիշելուց յետոյ թիւրքական վերջին հաղորդագրութիւնը (որի համաձայն որպէս թէ թիւրք յառաջապահները Կովկասեան ճակատի վրայ յանկարծակիի բերել էին հայ կամաւորների մի խումբ և կոտորել կամ գերի էին բռնել), ցոյց է տալիս, որ հայերը, հակառակ իրենց հսկայական զոհողութիւններին, դեռ շարունակում են կռուել իրենց հայրենիքի ազատագրութեան համար։

Ռէութերի գործակալութիւնը Ամստերդամից հեռագրում է, որ գերմանական կիսապաշտօնական օրգան «Lokal Anzeiger» պատասխանում է պ. Ասկուիտին հետևեալ կերպով. «Հնարաւորութեան չափով Գերմանիա միջամտել է ի նպաստ հայկական շահերին, սակայն մենք, որ ամբողջապէս զբաղուած ենք մեր սեփական գործերով, հազիւ թէ կարող լինէինք կատարել փրկչի դեր այն բոլոր ազգերի համար, որոնք Համաձայնութեան Պետութիւնների զօրութեան վստահացած լինելու պատճառով հանդիպել են դժբախտութեան»։

«Kölnische Yolhszeitung»-ը նկատում է, որ «Ասկուիտի հայկական հարցի վերաբերմամբ ցոյց տուած կարեկցութիւնը գերազանցապէս կատակերգական է»։ Գերմանական սոցիալիստ թերթը պնդում է, որ Գերմանիայի խիղճը մաքուր է այդ կոտորածների մէջ։

***

Լորդ Կրոմրը և հայ փախստականներ.—Ժամանակից Եգիպտոսի ստեղծողը, Լորդ Կրոմըր, «Թայմզ»-ի խմբագրին ուղղած մի նամակով գրում է.

«Յոյս ունեմ, որ ձեր սիւնակներում կը հիւրընկալէք այս նամակը և ձեր ընթերցողների ուշադրութիւնը կրկին կը հրաւիրէք այն կողմի վրայ, ուր Լորդ Բրայս և ուրիշներ ուղղեցին աշխարհին ի նպաստ հայ փախստականների։—Ինչ որ վերաբերում է հասարակութեան ծանօթութեան, Հայաստանի քաղաքական ապագան երևում է բոլորովին անստոյգ։ Բայց հայ փախստականների ֆոնդը ոչ մի կապակցութիւն չունի քաղաքականութեան հետ։ Ֆոնդի նպատակն է պարզապէս նպաստել հայ գաղթականներին և թեթևացնել անհուն թշուառութիւնը հայ մնացորդի, որ ազատուած է թիւրքերի և նրանց գերմանացի օգնականների կոտորածներից։ Պէտք է մտաբերել, որ 1878-ին Բեռլինի դաշնադրութեան ժամանակ եղած կարգադրութիւնների համաձայն բրիտանական ազգը գտնւում է առանձնայատուկ պատասխանատուութեան տակ հանդէպ հայկական գործերի»։

Յետոյ Լորդ Կրոմըր յորդոր է կարդում նպաստի գումարներ ուղարկել Լորդ-Մէրի հայկ. ֆոնդին։

Վերոյիշեալ ճառը և նամակը տալուց յետոյ, ես պէտք չեմ տեսնում մի բառ անգամ աւելացնել իմ կողմից։ Եթէ հայ մամուլը, հայ խմբագիրները և թղթակիցները մի քիչ քաղաքական իմաստութիւն ունենային րոպէի պատասխանատուութիւնը և լըրջութիւնն ըմբռնելու, անպայման կը լռէին և կը խուսափէին ամէն անհատական կարծիք յայտնելէ։ Մեր ականաւոր բարեկամները յաճախ կրկնել են անցեալում և կրկնում են այժմ, որ հայերը պէտք է զգուշանան իրենց համոզմունքները և կարծիքները յայտնելէ, դէթ ներկայ րոպէին։ Հայ մամուլը կարող է փակել իր էջերը «անհատական կարծիքների» առջև, և առայժմ բաւականանալ օտար բարեկամների ճառերով և կարծիքներով։

(Արև № 272) Արշակ Սաֆրաստեան

—

Ֆրանսիայ Նախարարապետ Բրիանի Հայոց խնդրի մասին արած յայտարարութիւնից յետոյ այժմ նոյնն անում է Անգլիայինը՝ Ասկուիտը, թէև երկուսն էլ դժբախտաբար ոչ-պաշտօնական հանգամանքներում։ Հայ ժողովուրդը շատ աւելի երախտագէտ պիտի լինէր իւր բարեկամներին եթէ նրանք ոչ թէ առանձական լեզուով խօսէին, որ մեկնութեան կարօտ է, այլ պարզ և մեկին։ Հայ ժողովուրդը շատ կուզենար իւր կեղծ և անկեղծ բարեկամներին լաւ ճանաչել և զուր յոյսերով չօրօրուել։ Սկայ

# Գեղարուեստ

***

I

Թող ոչ ոք ինձ մօտ քեզնից չը խօսի,
Քո քաղցրահնչիւն անունը չասի.
Թող ոչ ոք քեզնից ինձ լուր չըբերի,
Հոգուս անդորրը՝ ցաւով չօրօրի…

Դղեակս քեզնից հեռու է հեռու,
Էլ չենք տեսնելու, երբէք իրարու.
Մեր հանդիպումը պիտ լինի երազ,
Յաւիտեան անյայտ, յաւիտեան անհաս...

II

Սիրուս պարտիզում, արեւն է ժպտում,
Սգաւոր նոճին չի լալիս տրտում.
Ծաղկունքը նազան հովերի գրկում,
Կեանքիս գարունն են քնքշօրէն երգում...

Աստղերը հոգուս լազուր կամարում
Անվիշտ օրերի լոյսերն են վառում.
Սիրտս է խնդում յաւէրժի ճամբին,
Ուր գեղածիծաղ շողում է արփին...

Թող ոչ ոք քեզնից ինձ լուր չբերի,
Հոգուս անդորրը ցաւով չօրօրի.
Տխուր ու տանջող ժամերս խամրած,
Չունին վերադարձ... չունին վերադարձ...

Ալէքսանդրապոլ — Վարսենիկ Աղասեան

---

* * *

I

Լսեցի, որ շուշաններին
Դու ես կաթ տուել,
Որ սպիտակ են այնպէս.
Լսեցի, որ ծաղիկները քո աղօթքի խօսքերն են.
Նրանց բոյրը—քո շունչն է:
Հիացրել ես թիթեռներին.
Նրանք քեզ են որոնում,
Ճրագները մոռացած:
Հրամայել ես, որ եղնիկները մրսին սարերում,
Որ քո դուռը գան...
Մրսում եմ, լսել եմ ու եկել,
Եկել եմ պարտուելու.
Եւ ներումն խնդրելու աչքերիցդ:
Քաւութեան եմ եկել...
Իմ մեղքը, իմ սէրն է—
Ներում չկա՛յ...

Գ. Շահինեան

# Գրականութիւն

## ԹԱՓԱՌՈՒՄՆԵՐ

Երբ վերջալոյսի վարդերը վիզերնին թեքեն ու հոգեւարքի մեղեդիները հեծեն ցաւագնօրէն, միւս կողմէ զով, արբեցնող սարսուռ մը թեւալի և իր թեթև հովհարին ներքև թարմացնէ մարդկային յոգնած մարմիններ, ես սովորութիւն ունիմ դուրս գալու այս մենաւոր ու բարձրակառոյց սենեակէն և քիչ մ'անցնելու Թիֆլիսի մեծ պողոտային երկայնքն ի վար:

Ահա այդպիսի վերջալուսին էր, հորիզոնի ծունկերուն ծա-թած, գեղնած վարսերով և պչրող ժպիտներով ու ես կը քալեմ այն կանաչածառերուն առջևէն, որոնց հովանուն տակ լայն, ծառուղին կերկարի և սպիտակ, մաքուր սալայատակն՝ իր մարմարեայ և հոլանի դէմքը կը բանայ:

Աշնան օր է և երկնքի երեսին ամպի ճերմակ ժապաւէններ կան. ծառերուն մազերը դեղներ են և տերեւներն իրենց գալկացած գեղեցկութիւնը կողբան. մթնոլորդին մէջ ցուրտ հով մը կանգնած է, որ իր չարաճճի թեւերով կը փարէ երեսիս ու քունքերուս և տեսակ մը տրտմաշող ու քայքայող մեղեդի մը կը դաշնակէ ականջներուս: Ոտներուս առջևէն կիսամեռ եղնիկներու պէս տերեւներն կոտտոտեն, կը դողդղան, կարծես ձմեռուայ ցուրտէն սառչող մուրացկաններ ըլլան, սառած մատներով և վաղեմի կեանքին գեղեցիկ յիշողութիւններով համակուած:

Պատուհաններին կապոյտ փեղկերն ի վար ծաղիկները կը կախուին: Ա՜հ, ինչքան տխուր են անոնք. մահուան տրտմութիւն մը կը սողայ անոնց ճերմակ թերթիկներուն վրայէն. մեռած զաւկի գերեզմանին վրայ ողբացող մօր մը պէս կարտասուեն անոնք և կամ այրիացած կանայք ըլլան, որոնց կողերուն մէջ արգասաւոր հիւթը այլեւս չի թրթռար և կեանքը դադրած է իր գգուեցնող ու գլխիչ բուրումը ծաւալելէ...:

Երկնքի երեսին եթէ նայիս թռչունի թեւ մը չես տեսներ, գարնան իրիկուններու շրշիւններուն ներդաշնակութիւնը ալ չի փութար ականջներուդ բջիջները թրթռացնել և ոչ ալ մոխրագոյն բզէզը կամ նազանի մաշկաթեւը կը թռչի օդին ալիքները տատանելու համար: Ի զուր մանիշակամորթ ծանծղներուն թափառումը կը փնտռես և կամ հայեացքդ կը սուզես անհունին մէջ կենսավառ ու հրայրքոտ երազներ որոնելու համար:

Ահա մայթին վրայէն կատու մը կը քալէ, սպիտակ մորթ մը և թխագոյն ագի մ'ունի վրան. աչքերը խաժ են և իրենց մէջ կանդրացոլան վերջալոյսի խարտեաշ գեղեցկութիւնն կամ այն ծիրանեգոյն հիւրիկը, որ նկարուած է երկնակամարի երկայնքն ի վար, կնոջ մերկ ծունկերուն պէս, որ ճերմակ վերմակին վրայ կերկարի:

Բայց ինչու կատուն այնպիսի յոգնած և խղճալի երեւոյթ մ'ունի, անոր ոտներն չեն ընթանար արագութեամբ կամ թխամազ պոչը կենդանի և աշխոյժ կերպով չի թօթուիր. որովհետև գարունը չի խայտար մէջ, աշնան տրտմաթաթաւ զգայնութիւնը պարփակեր է զայն և եթէ էգ մը իր գեղեցիկ ու գիւթիչ սատաբանկարը երեցնէ փողոցի անկիւնէն, երբեք ան կը միտի վազել հետապա և կամ մրկուիլ գրգանքի անզուսպ կատաղութեամբ. Բջիջներն այդ կատուի մէջ այնպէս են ինչպէս վերջալոյսի թոշնած վարդերուն կամ պատուհանէն երեսնին կախած շուշաններուն մէջ, արիւնը չի յորդեր կարմիր յորձանքներով և չի տաքցներ անոր երակներու ցրտութիւնը:

Նոյն մեռնող կեանքը կը տիրապետի կառքին լծուած երկու միագոյն և նրբամէջք զոյգ ձիերուն մէջ, որոնցմէ մին իր պառաւած ու թափուած ատամներով կը ծամէ սանձին երկաթեայ օղակը, որուն վրայէն գեղնորակ փրփուր մը կը հոսէ և կը ծորայ կաթիլ առ կաթիլ յարդի շիւղերով շաղախուած: Միւս ձին աջ բազուկը կը շարժէ անհանդարտ կերպով, որովհետև կրունկին վրայ, սմբակներուն քով թարախոտ վէրք մ'ունի, որուն շուրջ բոլորը կաշին կոշկոռուած ու կծկուած է և թանի նման պինդ հեղուկ մը կը ժայթքէ դուրս, կեղտոտ մազիկներով ճանճերը կը թեածեն ու կը ծծեն անկէ լերթացած արիւնը. կենդանին կը հծծայ դառնօրէն և ցրտութիւնէն իր կռնակը կը թպրտացնէ ամպի նման տաք գոլորշի մը ծաւալելով մթնոլորդին մէջ:

—Ցո՛ւրտ է, ցուրտ, ամեն տեղ, հոն երկնքին վրայ և իմ մէջս...:

Ես չը գիտեմ թէ ոտներս ինչպէս կընթանան, որովհետև

Մինչ ես այդ վերջալոյսի պատկերներովը ծանրաբեռնուած, քայլերս դէպի բնակարանս կուղղեմ, նորէն չարունակելու համար իմ անշուք, իմ մենաւոր կեանքը…։

Տ. Թորգոմեան

## ԵՐԱԺՇՏՈՒԹԻՒՆ

### Ն. ՂՈՒԿԱՍԵԱՆԻ ՊԱՏՈՒԱԽԱՂԸ (ԲԵՆԵՖԻՍ)

Հայերն ունեցել են գեղարուեստական ասպարիզում խոշոր տաղանդներ — նկարչութեան՝ Այվազովսկի և թատրոնական՝ Ադամեան, բայց մինչև օրս թատերգական գեղարուեստի մէջ դուրս չեկաւ խոշոր տաղանդ։

«Թատերգը» (օպերա) իտալական ազգային կուլտուրայի արտադրութիւն է. Թատերգը ծագում է լատիներէն «opus» (գործ) բառի յոգնակի «opera» ձևից։ Թատերգն է իսկապէս drama per musica, այսինքն դրամա երաժշտութեամբ։ Դրամային աւելի ոյժ տալու և հանդիսատեսի վրայ աւելի տպաւորութիւն գործելու համար մտցուած է երգը և երաժշտութիւնը, որ հին դասական ողբերգութեան չքախմբի, ժողովրդի և այլ խմբակների դերն է կատարում, շահագրգռուած կամ անշահագրգիռ հանդիսատեսի դեր բռնելով։

Թատերգի մեկնաբաններ են երգիչ դերասանները, որոնք միաժամանակ պիտի լինեն կատարեալ գեղարուեստագէտներ և կատարեալ երգիչներ։

Պ. Ղուկասեանը, իբրև դրամատիկ տենոր գերազանցեց բոլորին։ Ահա 9 տարի է, որ նա երգում է յաջողութեամբ զանազան քաղաքներում։ Թիֆլիսի «Պետական» թատրոնում երգում են բացի պ. Ղուկասեանից և երկու հայեր՝ պ. պ. Իսկանդէր և Վենեցիանով կեղծ անունով։

Ղուկասեանը իր պատուախաղին, 29 նոյեմբերի, տուաւ հաջակաւոր «Հուգենոտներ» թատերգը։

Թատերգի հեղինակը՝ Մէյերբէրը ծագումով հրէայ է. ունենալով երաժշտագրութեան հանճար, ժառանգելով «Մէյեր» ազգանունով բանկիրի ամբողջ հարստութիւնը վերջինի ազգանունը կցեց իր «Բէր» ազգանուան։

«Հուգենոտներ» թատերգը մեծ աջողութեամբ խաղացուեց Պարիզում շնորհիւ այն մեծ թատերգական ծախսերի, որ արաւ հարուստ երաժշտագիր Մէյերբէրը։

Այդ թատերգը գրուած է յանուն այն կատարեալ կրօնական համբերողութեան, ազատութեան, որ տիրում է վաղուց ի վեր Ֆրանսիայում։ «Հուգենոտների» բովանդակութիւնը հետևեալն է. Ֆրանսիայում 1572 թուականի օգոստոսի 24-ին Բարդուղեմեան գիշերը կաթոլիկները յարձակւում են բողոքականների վրայ կոտորելու։

Այդ կոտորածի ճշմարիտ հեղինակի՝ դուքս Գիզի տեղ բռնում է թատերգում դուքս Սէն-Բրին, որի կաթոլիկ դուստրը չնայելով սիրահարուած է բողոքական Ռաուլի վերայ, բայց որին՝ հակառակ իր կամքի՝ ուզում են բռնի ամուսնացնել կաթոլիկ դուքս դը Նեվէրի հետ։ Ռաուլը կուսակից է Ֆրանսիոյ թագաւոր Հանրի Դ. Նաւարրացու, որի կրօնական հայեացքը բնորոշում է նորա «Paris vaut bieu une messe» խօսքը, այն է Պարիզը մի պատարագ արժէ։ Ռաուլը տեսնելով իր սիրական Վալենտինային ամուսնացած կաթոլիկի հետ և իմանալով, որ Վալենտինայի հօր տանը դաւադրութիւն են կազմում իր հաւատակից եղբայրների՝ «Հուգենոտների» դէմ Բարդուղեմեան գիշերուայ կոտորածին, չնայելով Վալենտինայի բոլոր ջանքերին դուրս է թըռնում և փողոց նետում իրեն հաւատակիցներին օգնելու։

Պատուընկալը (բենեֆիցիանտ) 29 նոյեմբերի մեծ յաջողութիւն ունեցաւ և ստացաւ մօտ 15 թանկագին ընծայ. կատարեց Ռաուլի դերը ամենայն բարեխղճութեամբ. մի դրամատիկ դեր, որ պահանջում է բարձր դրամատիկ տենորի ձայն։ Թագուհու մանկլաւիկի դերը կատարեց տ. Արդ, պ. Ղուկասեանը կինը, նոյնպէս յաջողութեամբ։

Լսում ենք, որ պ. Ղուկասեանը մտադիր է Մեծ պասին կաթողիկոսի գիւանապետ Տիրայր վարդապետի առաջարկութեամբ, գնալ Էջմիածին Մայր տաճարում երգելու։

Յաջողութիւն։

Տիգրան Աթարէգեանց

## ԱՅԼԵՒԱՅԼՔ

### ԵՐԵԽԱՆԵՐԻ ՅԱՆՑԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

Անգլիոյ ներքին գործերի նախարարութեան ատենագրութիւններից մինը կարդացել է Բիրմինգամում մի զեկուցում, որով վրդովուած մատնանշում էր, թէ ինչպէս անչափահաս յանցագործների թիւն աճում է և սաստկացել է մանաւանդ պատերազմի միջոցին։

Այս տխուր երևոյթի պատճառներն ըստ նորա շատ են։ Ծնողների հսկողութեան նուազումը պատերազմի շնորհիւ, շատ ընտանիքների հայրեր կամ մեկնել են ճակատ կամ զբաղուած են ընտանիքից հեռու։ Աշխատանք խնդրելը (спросъ) պատանիների համար քանի գնում սաստկանում է։ Մանուկների ձեռքն է ընկնում դրամական նշանաւոր գումարներ, որև փչացնում են դատարկ զուարճութեանց և ամենից աւելի շարժանկարների (кинематографъ) վրայ. իսկ քրէական տեսարանները, ինչպէս յայտնի է, ամենից աւելի ապականարար ազդեցութիւն են գործում երեխաների անկայուն հոգու վրայ։ Զեկուցիչը բերաւ օրինակներ, թէ ինչպէս երեխաները յաճախ իրենց ծնողներին պլոկում էին շարժանկարների ազդեցութեան տակ և մինչև իսկ կազմակերպում էին իսկական աւազակային յարձակումներ։ Զօրաճակատի անցքերի պատմուածքներն ու հաղորդագրութիւնները բորբոքում են երեխաների երևակայութիւնը և զարգացնում թափառականութեան և արկածախնդրութեան ոգին։ Ի վերջոյ ակնբաղի դեր է խաղում դպրոցներում ուսուցիչների նուազումը։

Ներքին գործերի նախարարութեան վիճակագրութեան տուեքներին (данные) նայելով սկսեալ 1-ից դեկտեմբերի 1915 ամի մինչև 1 մարտի 1916 թուականի և մի այդքան ժամանակ մի տարի առաջ երևում է, որ մինչև 16 տարեկան յանցագործ երեխաների թիւը բարձրացել է 34%-ի, իսկ մեծ քաղաքներում այդ աճումը հասնում է մինչև 50%-ի։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Մարտ»-ի հրատարակութիւնն ընդհատուած է միմիայն ժամանակաւորապէս։ Ընդհատման պատճառը հայ գրաշարի բացակայութիւնն է Մոսկուայում։ «Մարտ»-ի հրատարակութեան գործը սոյն 1916 թ. լիովին ապահովուած էր։ Միայն հայ գրաշար չկար։

Իսկ երբ մշտական հայ գրաշար ունեցանք, այն ժամանակ թերթն անմիջապէս լոյս ենք ընծայելու, ամենևին ուշադրութեան չառնելով և ոչ մի բաժանորդագրական պայման։ Եւ այդ աջողութիւնն ունենալուց՝ ներկայ տարուայ մեր բաժանորդները «Մարտ»-ը կստանան, այլևս տարեկան բաժնեգին չվճարելով։

Մոսկուա Միշտ խորին յարգանօք

«Մարտ»-ի խմբագրութիւն Արշակ Կայծունի

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ